

ԵՐԵՎԱՆԻ 60-ՐԴ ԴՊՐՈՑԻ «ՀՄՈՒՏ ՁԵՌՔԵՐ» ԽՄԲԱԿԻ ԱՆԴԱՄՆԵՐԸ ՍՏՎԱՐԱԹՂԹԻՑ ՊԱՏՐԱՍՏՈՒՄ ԵՆ ԵՐԿՐԱՉԱՓԱԿԱՆ ՄԱՐՄԻՆՆԵՐ։

*Ֆոտո Հ. ՀԵՔԵՔՅԱՆԻ*




*Լենինի—Ստալինի գործի պայքարին եղի՛ր պատրաստ*

№ 2

ՓԵՏՐՎԱՐ

1954 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 26-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

# Տարաս Պոլիշչուկ

(Հատված պոեմից)

*ՄԻՔ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

*Նկ. Ս. ՍԱՖԱՐՅԱՆԻ*

Դնեպր գետը վարար-վարար,
Գալարվում է ահեղ ուժով,
Ու թվում է՝ գետն էլ ահա
Լիքն է անհուն մի վրեժով:
Կարծես գետից ելան նրանք
Պոլիշչուկն ու Եգոր քեռին,
Շուրջը դաշտն է փռված մռայլ
Ու դաշտով մեկ լայն խճուղին...
— Տարա՛ս, անցիր. գնաս բարով:
Պոլիշչուկը շունչը պահում,
Իջնում է մութ ճանապարհով,
Ծառերի մեջ անհետանում...
Բրեստ-Լիտովսկ... դաշտ, խճուղի,
Ժանիքավոր փշալարեր,
Տարասն ահա գաղտագողի
Բարձրանում է բլուրն ի վեր:
Ներքև դաշտն է, Դնեպրը լայն,
Սակայն շրջող պահակների
Ոտնաձայնն է լսում տղան:
Անցիր, հետո ուշ կլինի...
Աչքերն հառած պահակներին,
Շրջանցում է նա կամացուկ,
Եվ խճուղու եզրաքարից
Իրեն մոտիկ փոսն է գցում:
Ջուր է, սառույց, թեկուզ գարուն.
Եվ սառնաշունչ քամին անվերջ
Ոռնում է և փախչում հեռու,
Մարում կրակն աչքերիդ մեջ...
Ոչինչ, միայն դաշտում լինի:
Ահա մոտիկ կանգնած մի տանկ,
Պոլիշչուկը գաղտագողի
Սողաց, մտավ այդ տանկի տակ...
Շուրջը թինդն է մոտորների,
Կայծկլտացող լույսերի մեջ
Տեսնում է նա ավտոների
Եվ տանկերի շարքերն անվերջ:
Բայց ի՞նչ գունդ է, ի՞նչ զորամաս.
Պետք է գնալ, գնալ առաջ.
— Զգո՛ւյշ,— կարծես ընկերն ասաց.
Եվ Տարասը ժպտաց նրան:
Ժանիքները փշալարի
Հոշոտել են դեմքը նրա,
Եվ արյունը կաթիլ-կաթիլ
Ծորում է այն դաշտի վրա...
Ոչինչ, պարզ է տեսնում հիմա,



Լսում ձայներն սպաների.
Ամեն կողմից կանչ, հրաման,
Գաղտնի բառեր անցումների...

Եվ տանկերի շարքի միջով
Անցնում է նա ոնց ուրվական.
Եվ անշփոթ նշում իր մոտ
Զորամասի անունն անգամ:
Բայց ի՞նչ է այն, չմոտենա՞,
Արդյոք ի՞նչ կա այն բարաքում.
Ո՛չ, Եգորը կբարկանա,
Սպասում է նա պուրակում:

***

Հսկայական ծածկերի տակ
Խիտ շարքերն են հրանոթների,
Պետք է վայրը գծել շտապ,
Որ հարվածը դիպուկ լինի...
Մի վայրկյան՝ և նշում է նա,
Բաբախում է սիրտը ուժգին.
Թվում է, թե չի դիմանա
Այս երջանիկ հաղթանակին...
Դեռ շուտ է, շուտ, Տարա՛ս, կարգի՛ն,
Դեռ ո՞ւր է որ անփորձ հասնես.
Մոռացել ես դու պահակին,



Մոտենում է հիմա նա քեզ:
Տարասն իրեն նետեց առուն,
Ծոցի թղթերն ուղղեց նորից,
Երջանկության հուրն աչքերում,
Բռնեց ձգված փշալարից...
— Կա՛ց,— լսեց նա այնքան մոտիկ.
«Մի՞թե կորավ», խորհեց տղան.
Դեմք՝ փողն է ավտոմատի,
Սակայն ինչո՞ւ պահակն ընկավ:
Ապշեց տղան: Աչքի առաջ
Մենամարտ է: Ո՞վ է կռվում:
Տարասն արագ հասավ նրան
Ու ճանաչեց Եգոր քեռուն:
Ձեռքով սեղմած բերանն օձի,
Ճզմեց քեռին դունչը նրա,
Իջավ դանակը Տարասի.
Ընկավ պահակն արյունլվա...

***

Կիևն այդ գիշեր հայտնեց Մոսկվային.
«Բրեստյան խճուղի. հարավ-արևելք.
Նոր միավորում. «ՍՍ». տանկային.
Հետախույզ Տարաս Պոլիշչուկ, պիոներ»:
Պատասխանն եկավ վաղ լուսաբացին՝
Ինքնաթիռների ահեղ որոտով,
Խճուղու վրա ռումբեր տեղացին
Ու դաշտը դարձավ հրահոս մի ծով...
Խառնվեց իրար զորք ու զինանոց,
Հրդեհի փայլից գետը հուրհրաց,
Լուսավորվեցին պուրակ ու փողոց,
Ամբողջ Կիևը հրեվանքից ցոլաց:
Ու երբ թշնամին այրվում էր հրում,
Տարասն էր կանգնած դրոշի ներքո.
Կոմերիտական տոմսն էր ստանում՝
Ջերմ ու սրտագին շնորհավորանքով...
Հպարտանում է քեռի Եգորը,
— Այ, թե ինչպես է մարդ հասունանում.
Երբ հայրենիքը վտանգի մեջ է,
Անմեղ մանուկն էլ առյուծ է դառնում:



# ՄՈՒՇԿԱ

Վ. ԱՆԱՆՅԱՆ

Նկ. Վ. ԿԱԺՈՅԱՆԻ

Ամառանոցի տանտիրուհին, որ իմ հանգիստը պահպանելու համար պատրաստ էր կռվելու հարևանուհիների հետ, նախատինքի խոսք անգամ չէր ասում ամեն առավոտ իմ քունը խանգարող շանը:

— Հիմա, հիմա, սիրելի՛ս. տե՞ղդ է կուշտ, թե՞ ուտել ես ուզում,— միջանցքից լսվում էր նրա փաղաքշող շշուկը:

Նա առանձին քնքշանքով էր վերաբերվում Մուշկային, ճերմակ խուճուճ մազերով, դեղին ականջներով և բրդոտ պոչով այդ կենդանուն:

— Իմ վարմունքը թող ձեզ համար զարմանալի չթվա,— կարծես արդարանալու համար մի օր դիմեց ինձ տանտիրուհին.— Մուշկան մի անգամ փրկել է իմ կյանքը:

Եվ նա սկսեց իր պատմությունը Մուշկայի մի զարմանալի արարքի մասին:

— Սև էր այն տարին, երբ գերմանական զորքերը մտան Եսենտուկի: Շատ չմնացին նրանք մեր քաղաքում, ընդամենը մի քանի ամիս, բայց այնպես քանդեցին, այնպես ապականեցին մեր սիրուն առողջարանը, որ հիմա էլ անեծքով ենք հիշում նրանց: Շատերը գնդակահարվեցին այդ ամիսներին, շատ մայրեր ու երեխաներ լաց եղան: Բայց սովետական մարդիկ, ով ինչով կարող էր, պայքարում էին զավթիչների դեմ: Ոմանք աշխատանքի չէին գնում, ոմանք Կովկասի սարերն էին բարձրացել, ոմանք էլ մեր վիրավոր մարտիկներին իրենց նկուղներում թաքցրած՝ խնամում էին ու բուժում նրանց վերքերը: Ուզում էի մի բանով էլ ես պետքական լինեմ Հայրենիքին:

Երբ ֆաշիստները քաղաք մտան, հոսպիտալներում մնացած մեր վիրավոր մարտիկներից շատերը ցրիվ եկան, թաքնվեցին այստեղ ու այնտեղ: Նրանցից երեքին էլ ես ապաստան տվի տանս նկուղում, կողպեքը դրեցի վրան և այս մեր Մուշկային կապեցի շեմքին: Իսկ ինքս այլևս գործարան չէի գնում և համոզում էի իմ բրիգադի կանանց, որ նրանք էլ չաշխատեն զավթիչների համար:

Դժվար էր առանց աշխատելու ապրել, կերակրել երեք վիրավորի: Տանս եղած կահկարասին շուկա հանեցի: Մի քանի շաբաթ դրանով ապրեցինք: Այնուհետև ստիպված եղա գնալ հարևան գյուղերը և օրավարձով աշխատել դաշտում: Գյուղերից շատ բան չէի բերում. բայց կարտոֆիլ, ճակնդեղ, կաղամբ միշտ էլ ճարում էի վիրավորների համար. եփում էի և գիշերը գաղտնի կերակրում նրանց: Հագուստներն էլ էի գաղտնի լվանում, գիշերները սենյակի ներսում՝ վառարանի դիմաց չորացնում, արդուկում:

Այդպես, իմ վիրավորները հետզհետե առողջացան և գնացին սարերը՝ պարտիզաններին միանալու: Մնաց վերջին զինվորը՝ մի նիհար հայ տղա, հոնքերը խիտ, աչքերը սև, ոտքը ջարդված և նորից անհաջող կպած:

— Կգնամ սարերը, գիծը կանցնեմ, կհասնեմ մերոնց: Ջարդված ոտքով էլ կարելի է տուն հասնել,— ասաց նա մի գիշեր:

— Մի քանի օր էլ մնա, սիրելի՛ս, այդ վիճակով տեղ չես հասնի,— հորդորում էի նրան:

Բայց չլսեց: Ձեռքս համբուրեց, իսկ ես նրա ճակատը, և դուրս եկավ տնից:

Գիշերվա կեսն անց էր: Հենց որ ցանկապատից դուրս եկավ, ավտոմատները ճարճատեցին: Քիչ անց քարշ տալով բակ բերին այն տղային: Նրա թարմ վերքերից արյուն էր ծորում, իսկ ինքը տնքում էր, կարծես խեղդվում էր օդի պակասությունից... Սիրտս մղկտաց, երերացի, հենվեցի պատին:

— Թաքստոցդ ցույց տուր,— ավտոմատի փողը վիրավորի ճակատին դեմ արած որոտում էր գեստապոյականը:

— Սարերից եմ գալիս,— հազիվ ասաց տղան:

— Դու այս տնից դուրս եկար, շո՛ւն,— կրունկներով վիրավորի գլխին խփում ու հետն էլ հայհոյում էր գերմանացին:

Կարծես սիրտս էին տրորում կրունկներով...

— Եկել էի... ուտելիք խնդրելու,— թույլ ձայնով պատասխանեց մեռնող վիրավորը:

Գունատ ու դողահար կպել էի պատին, իսկ Մուշկան վնգստում էր ներսում։ Շատ տանջեցին այն տղային իմ աչքի առաջ, բայց անունս չտվեց. ձևացրեց, որ չի ճանաչում։ Երբ այլևս անօգուտ էր անշնչացած



...ճասան իմ բարի ճարևաճներր։

մարդուն հարցաքննելը, հերթը հասավ ինձ։ Սվաստիկայով մարդը ինձ ներս հրավիրեց, լույսերը վառեց և հանգիստ հարցրեց.

— Ելե՛նա Նիկոլաևնա, ինչո՞վ բացատրել, որ դուք չեք աշխատում։

Հարցրեց ու նենգորեն ժպտաց։ Ես սոսկացի այդ ժպտից։

— Ուժ չունեմ, ոտքերս ոսկրացավից ուռել են, տեսնե՞ք,— արդարացա ես։

Մարդը նորից ժպտաց։

— Բայց, Ելե՛նա Նիկոլաևնա, համաձայնվեցեք, որ «Եսենտուկի № 20» ջուրը հիանալի մարսեցնում է սննդարար ուտելիքները,— հեգնախառն շարունակում էր շաղակրատել գերմանացին։— Ռուսաստանն իր հավերն ու խոզերը տրամադրել է մեզ, բայց հանքային ջուր չի տալիս, որ մարսենք...

Հիտլերականին իր սրամտությունը շատ դուր եկավ։ Նա սառը քրքջաց և դառնալով իր ստորադրյալներին, կարգադրեց.

— Մասսա՛ժ՝ Ելենա Նիկոլաևնային...

Մինչ ես կհասկանայի, թե «մասաժ» բառը ինչ իմաստ ունի այդ գևերի բառարանում, մի ծանր հարված ստացա վզիս, վայր ընկա և զգացի, որ մի քանի զույգ զինվորական ցեխոտ կոշիկներ տրորում են ինձ...

Երբ ուշքի եկա, արդեն լուսանում էր. իմ հարևանուհի Գալինա Իվանովնան թրջոցներ էր դնում մարմնիս կապտած մասերին ու հետո էլ վշտոտ քրթմնջում.

— Գազաննե՛ր, գազաննե՛ր...

Շան ծմրոց լսեցի։ Ցավերս զսպելով դժվարությամբ թեքվեցի և մահճակալից ցած նայեցի։ Մուշկան առաջին թաթերը վեր բարձրացրած, խղճալի հայացքով նայում էր ինձ և աղեկտուր ծմրում։

Ես դանդաղ ապաքինվում էի։ Մի օր էլ դուռս քաղաքավարի ծեծելուց հետո ներս մտավ իմ հոգեառը։

— Առողջանո՞ւմ եք, Ելե՛նա Նիկոլաևնա, շա՜տ ուրախ եմ,— ասաց նա և այնպես ժպտաց, որ փշաքաղվեցի։

— Ի՞նչ եք ուզում ինձանից, պարո՛ն սպա,— ասացի ես,— թողեք գոնե հանգիստ մեռնեմ...

— Ինչ ենք ուզո՜ւմ... ձեր առողջությունը։

— Իմ առողջությո՞ւնը,— զարմացա ես ու մի պահ սկսեցի մտածել. «Գուցե ես հարկավոր եմ սրանց. չէ՞ որ մինչև սրանց գալը ես անվանի բրիգադիր էի գործարանում։ Ուզում են՝ առողջանամ, որ աշխատեմ»։

Սրտումս ապրելու հույսեր ծագեցին, հարցրի.

— Պարո՛ն սպա, որ առողջանամ ի՞նչ եք անելու ինձ հետ։

— Ի՞նչ... Տարօրինակ հարց, կախաղան ենք բարձրացնելու,— ժպտալով պատասխանեց նա։

— Բայց ես մեղք չունեմ,— հազիվ բողոքեցի ես։

— Մեղք ունեք, Ելե՛նա Նիկոլաևնա,— մեղմությամբ առարկեց հիտլերականը։— Ձեր առաջին մեղքն այն է, որ կոմունիստի կին եք...

Զամբյուղը ձեռքին եկավ պառավ Գալինան և մնաց շեմքում սառած։

— Ա՜, դո՞ւք եք խնամում այս տիկնոջը,— ուրախ գոչեց հոգեառս և ոտքի կանգ-

*նելով, գերմաներեն գոչեց.— Հա՛նս, մի շնորհակալություն հայտնեցեք այս պառավին...*

*Վտիտ, հյուծված Գալինա Իվանովնային քարշ տվին բակ։ Հարվածների ձայն լսվեց, ճիչ և ամեն ինչ լռեց...*

*Այնուհետև կանաչ ակնոցներով հիտլերականը երեք-չորս օրը մեկ անգամ այցելում էր ինձ, հարցնում առողջությունս, հետաքրքրվում, թե ովքեր կապ ունեն պարտիզանների հետ, ովքեր են սովետական վիրավոր զինվորների թաքցրել։ Բավարար պատասխան չստանալով, վերջում սիրալիր հարցնում էր.*

*— Ե՞րբ եք ոտքի կանգնելու, Ելե՛նա Նիկոլաևնա։*

*— Իսկ ձեր ինչի՞ն է պետք իմ ոտքի կանգնելը։*

*— Որ գնաք հրապարակ կախվելու... Ախր այդ դատարկ գործը անտեղի ձգձգվում է...*

*— Որ այդպես է, ես առողջ եմ, հենց հիմա էլ կախեցեք. բավական է տանջեք ինձ,— գոչեցի ես և վրա նստեցի։*

*— Այդպես չի կարելի, Ելե՛նա Նիկոլաևնա, հիվանդին նախ կառողջացնեն, հետո կկախեն,— ասաց ու գնաց։*

*Այդ հրեշը հալածում էր ինձ երազում, արթուն վիճակում։ Ամեն չխկոցից վեր էի թռչում ու լարված ականջ դնում։*

*Ինձ հետ շարունակ տագնապի մեջ էր և իմ շնիկը։ Գեստապոյականին նա լավ էր ճանաչում։ Գիտեր, որ ինձ տանջողը նա է։ Ատում էր նրան, հաչում վրան, բայց այնքան թույլ արարած էր նա, որ վրեժ հանել իմ թշնամուց չէր կարող։ Միայն ականջը դռան ձայներին, նա անսխալ որսում էր, թե ով է եկողը. գաղտնի այցի եկող բարեկամ, թե՞ այն գերմանացին։ Նրա հոտից, նրա քայլերից կենդանին իր բնազդով, իր հոտոտելիքով և սուր լսողությամբ զգում էր ժպիտը դեմքին այդ ահավոր մարդու մոտենալը և սկսում էր հաչել ու աղիողորմ ոռնալ։*

*Այլևս ուժ չունեի այդ վիճակը տանելու։ Ամուսնուս և որդուս կռվում կորցրած, զուրկ հարազատներից, փշրված սրտով, հիվանդ ու անօգնական, ո՞ւմն էր հարկավոր իմ կյանքը։ Միևնույն է, առողջանամ էլ, կախաղան են բարձրացնելու։ Կես գիշեր էր, որ այս մռայլ մտքերը պատել էին ինձ։ Վեր կացա, հրաժեշտ տվի աշխարհին ու թույնով լի սրվակը դատարկեցի մինչև հատակը...*

*Սառը քրտինքը պատեց ինձ, սկսվեցին ջղաձգումները։ Մռնչում էի ցավից, գալարվում։ Հանկարծ ներս ընկավ Մուշկան, հարցական նայեց ինձ։ Մոտ կանչեցի, գլուխը շոյեցի ու լալով ասացի.*

*— Մնաս բարով, իմ Մո՛ւշկա, ո՞վ պիտի կերակրի քեզ...*



— Հիմա ձեզ հասկանալի՞ է, թե ինչու եմ այսպես կապված Մուշկային։

*Կարծես հասկացավ։ Թաթերը վեր բարձրացրեց, լիզեց ձեռքերս ու այնպես էր ծմռրում, այնպես տնքում, կարծես սուր են խրել սիրտը։ Ապա, երբ տեսավ, որ ցավերս սաստկանում են, վազեց միջանցք,*

*դուռը շանգռեց՝ չկարողացավ բաց անել: Ետ եկավ, վազվզեց սենյակում, թռավ լուսամուտի գոգը և բաց պատուհանից ցատկեց, անհետացավ գիշերվա խավարի մեջ:*

*Մի քանի վայրկյան անց լսվեց նրա աղմըկալի հաչոցը հարևան բակում: Այնպես էր ոռնում, այնպես շանգռում փակ դռները, կարծես գիտեր, որ օգնությունն ուշացնել չի կարելի:*

*Դռներ ճռռացին, լույսեր երևացին, ոտնաձայներ լսվեցին և Մուշկան ուրախ հաչոցով ներս ընկավ լուսամուտից. կարծես ավետում էր, թե օգնություն է գալիս: Եվ իսկապես, հասան իմ բարի հարևանները, լավ ժամանակին հասան: Ուժով բացեցին սառչող ծնոտներս, երեք-չորս լիտր կաթ լցրին ստամոքսս, դեղ տվին: Թույնը չեզոքացավ, կյանքս փրկվեց:*

*Սկզբում խորը անտարբերություն էր եկել վրաս, ափսոսում էի, որ չեմ մեռել: Հետո գիտակցությունս հաղթեց, միտքս պարզվեց. չէ, պիտի ապրել, ապրել վրեժ լուծելու համար, պիտի ապրել՝ մեր սուրբ հողը ազատ տեսնելու համար, պիտի պետք գալ երկրին:*

*Եվ իսկապես, շուտով սև օրերն անցան, մեր զորքերը քշեցին գերմանացիներին, որոնք այնպես էլ ժամանակ չգտան ինձ կախելու: Ես հավաքեցի իմ ցրված բրիգադը, գործի անցա և գործի մեջ հետզհետե սպիացան իմ հոգու վերքերը...*

*Ու հիմա մեկ-մեկ հիշում եմ իմ այն ժամանակվա մռայլ մտքերը, իմ փոքրոգի քայլն ու ասում եմ. ի՜նչ լավ էր, որ այն սև գիշերը Մուշկան իմաց տվեց հարևաններիս...*

*— Հիմա ձեզ հասկանալի՞ է, թե ինչու եմ այսպես կապված Մուշկային,— վերջացրեց Ելենա Նիկոլաևնան:*

*Իսկ Մուշկան, նրա ոտքերին փարված, ներքևից վերև նայում էր իր տիրուհուն, և նրա հայացքում ես անսահման սեր ու նվիրվածություն էի կարդում:*

---

# ՆՎԵՐԸ

ՎԻԼԻՍ ՕՇԻՆՑԱ
(Լատիշական գրող)

Նկ. Հ. ՍԱՆԱՍԱՐՅԱՆԻ

*Օսյան պտտվում էր խոհանոցի միջանցքում և ժամանակ առ ժամանակ ականջը սեղմում բանալու անցքին: Ինչ-որ բան այնտեղ փնչում, ճռճռում ու խշշում էր: Այո, հասկանալի է, ավագ եղբայր Անտոնը դարձյալ հոր սղոցով մի բան է շինում: Օսյան կնայեր, բայց ինչպե՞ս կտեսներ, երբ Անտոշկան ամանների սրբիչը կախել է բանալու անցքի դեմ: Դուռն էլ ծեծես, նա դուրս կթռչի ու կբռնցքահարի:*

*Օսյան ծոծրակը քորելով վերադարձավ սենյակ: Անտոշկային պետք է մի ակնթարթ դուրս քաշել խոհանոցից և այդ ժամանակ նայել, թե ինչ է անում նա այնտեղ. բայց ինչպե՞ս:*

*Տղան շալվարն ուղղեց, զոլավոր բլուզի ծայրերը դրեց նրա տակ ու մոտեցավ սեղանին: Սեղանի վրա ընկած էր նոր պայուսակը, որը տարեսկզբից արդեն երկու տեղ թանաքոտվել էր: Օսյան պայուսակի միջից հանեց փայլուն կապույտ թղթի մեջ փաթաթված գիրքը: Գրքի վրա եղբոր ձեռքով գրված էր. «Օսվալդ Կրաստին. ընթերցարան, առաջին դասարան»:*

*Օսյան բացեց գրքի այն էջը, որտեղ պատկերներ էր նկարված, և այնտեղից հանեց փոստային երկու դրոշմանիշ: Ասես ոչ թե դրոշմանիշ, այլ ծխախոտի նուրբ թուղթ էր, որ տղան զգուշաբար դրեց պատուհանի գոգը: Հետո պատուհանին մոտեցրեց փափուկ ու խոր բազկաթոռը և ոտով-գլխով թաղվեց նրա մեջ: Հենվելով պատուհանի գոգին, սկսեց մանրազնին դիտել դրոշմանիշները:*

*Դրոշմանիշներից մեկի վրա նկարված էր կարմիր վզկապ ունեցող մի աղջիկ, որը գիրք էր կարդում: Մյուսի վրա՝ երեք մարդ կանգնել են ինչ-որ նկարազարդ մի թղթի առաջ: Նրանցից մեկը գրում է այդ թղթի վրա: Նրանց հետևի շենքից կարմիր դրոշակ*

է կախված, իսկ հեռվում մարդիկ են քայլում շարասյուներով. ավելի հեռու՝ Կրեմլն է, աշտարակի ծայրին՝ կարմիր աստղ: Դրոշմանիշի վրա գրված է. «Հանուն խաղաղության»: Առաջինը նա չկարդաց, որովհետև բառերը երկար էին ու տառերն էլ մանր: Զանձրույթից Օսյան գնաց նստեց սեղանին, ոտքերով սկսեց խփել սեղանի կողերին ու երգել. «Դրոշմանիշ, դրոշմանիշ,

Ես ունեմ դրոշմանիշ»:

Սկզբում երգում էր ցածր ձայնով, իսկ հետո քանի գնաց բարձրացրեց, վերջում էլ արդեն գոռաց՝

«Դրոշմանիշ, դրոշմանիշ,
Ես ունեմ դրոշմանիշ»:

Դուռը բացվեց և դռան արանքում երևաց ծաղկատար դեմքով մի տղայի շիկահեր գլուխը: Դա Օսյայի ավագ եղբայր Անտոնն էր:

— Այդ ի՞նչ դրոշմանիշներ են, հո պատահաբար իմը չե՞ս վերցրել,— հարցրեց նա ու եղբոր ձեռքին տեսնելով դրոշմանիշները, մոտավ սենյակ:

Օսյան դրոշմանիշները սեղմեց բռան մեջ, սահեց սեղանից և մի ակնթարթում հայտնվեց սեղանի մյուս կողմը: Նա չմտածեց, որ դրոշմանիշները կարող են ճմլվել:

— Սրանք քոնը չեն, ես Վալկայի բակից եմ գտել: Եթե չես հավատում՝ հարցրու,— շուտասելուկի պես գոռաց Օսյան և սկսեց վազել սեղանի շուրջը:

Անտոնը համարյա բռնեց Օսյայի թևը, բայց Օսյան ճարպկորեն թաքնվեց աթոռի հետևը: Անտոշկան էլ պակասը չէր: Մի ձեռքով բռնեց աթոռի թիկնակը, և մյուսով բաց չթողնելով եղբոր դրոշմանիշները պահող ձեռքը թռավ աթոռի վրայից...

— Ապա՛, ցույց տուր, թե իմը չեն,— շնչասպառ փնչաց նա:

Օսյան ձեռքը բացեց: Դրոշմանիշներն ընկան հատակին: Օսյան աղաղակեց եղբոր ձեռքից և կանգնեց նրա հետևը: Մինչ Անտոնը ուղղում ու ստուգում էր ճմլտված դրոշմանիշները, նա թաքուն անցավ խոհանոց: Երբ Անտոնը գլխի ընկավ, չարաճճին արդեն կարողացել էր ձեռք տալ հղկված սպիտակ տախտակներին, հաշվել մեխերը և խառնել վառարանի վրա դրած սոսինձը:

Անտոնն իսկույն վրա հասավ:

— Հետքդ անգամ չտեսնեմ այստեղ,— գոռաց նա:

— Ասա, թե ի՞նչ ես շինում այստեղ, այն ժամանակ հետքս չի լինի,— անձնատուր չեղավ Օսյան:

— Քո գործը չէ,— մրթմրթաց Անտոնը:

Նա բռնեց Օսյայի ձեռքից, դուրս քաշեց



...Անտոնը դարձյալ նոր սղոցով մի բան է շինում:

խոհանոցից, իսկ ինքը մտավ ներս ու դուռը պինդ փակեց իր հետևից:

— Սպասի՛ր, ես էլ հասնեմ չորրորդ դասարան, քեզ ոչինչ ցույց չեմ տա,— լացակումած սաստեց Օսյան:

Նա թևքով սրբեց աչքերը, ոտքով խփեց դռանը և մտավ սենյակ՝ հավաքելու սեղանին ընկած իր ճմլված դրոշմանիշները: Նրա հետևից ներս մտավ մայրը գնումներով լիքը պայուսակը ձեռքին:

— «Կոֆե»,— կարդաց տղան թղթե փաթեթներից մեկի վրա և մոր հետ համարձակ գնաց խոհանոց։

Դուռն արդեն բաց էր։ Սպիտակ տախտակներ ոչ մի տեղ չկային. չկար նաև սոսինձը։ Օսյան գիտեր, որ այդ ամենը հիմա ընկած են վերևի թարեքին. իսկ այդ թարեքին նա կարող էր հասնել սեղանը պատին մոտեցնելով ու վրան էլ աթոռ դնելով։ Բայց պահարանի ու վառարանի մոտ թափված սպիտակ թեփը մատնում էին Անտոնին։

— Էլի՞,— ջղայնացավ մայրը,— էլի՞ ամեն տեղ կեղտոտված է։

— Ինձ հայրիկը թույլ է տվել,— քաջի տեսք ընդունելով հայտարարեց Անտոնը։

— Հազիվ թե քեզ հայրիկը թույլ տված լինի, որ կեղտոտես ու չմաքրես,— խորազնին նայեց նրան մայրը։

— Չհասցրի, մայրի՛կ,— տեղի տվեց Անտոնը։

Նա դռան հետևից վերցրեց խոզանակը և սկսեց մաքրել հատակը։

— Հապա ինչո՞ւ ես թաքնվում, եթե հայրիկը քեզ թույլ է տվել,— հետաքրքրվեց մայրը։

— Երեկոյան կվերջացնեմ,— ասաց Անտոնը խեթ նայելով եղբորը։

Երեկոյան դեմ աշխատանքից վերադարձավ հայրը։ Մայրը սեղանին դրեց ամանեղենը, Օսյան գդալները դասավորեց, Անտոնը հացը կտրտեց և բոլորը նստեցին ընթրելու։

— Ա՛յ, հիմա Օսյան էլ կարդալ գիտի,— ասաց մայրը և հպարտությամբ նայեց որդուն, իսկ ազատ ձեռքով շոյեց նրա ծոծրակը.— շուտով թերթ էլ կկարդա։

Հայրն էլ ձեռք տվեց Օսյայի ծոծրակին։

— Այո, ես հիմա գիտուն որդի ունեմ։ Գուցե գիտության մեջ եղբորից անցնի։

Բոլորը ծիծաղեցին։ Օսյան հասկացավ, որ եղբայրն օրվա հերոս է, որովհետև երեկ թերթի երեք վերնագիր կարդաց ու չսխալվեց։

— Ես այսօր խնձոր ինմին չեմ քնի,— հեղինակավոր հայտարարեց նա։

— Ինչո՞ւ, ի՞նչ պիտի անես որ,— զարմացավ հայրը։

Օսյան սեղմվեց հորը, հարցական նայեց նրա աչքերին ու ասաց.

— Կնայեմ, թե խոհանոցում այդ սպիտակ տախտակներից ինչ է շինում Անտոնը։

Հայրը դավադրի պես աչքով արեց Անտոնին։

— Դա Անտոնի գործն է,— ասաց նա,— ոչնչով օգնել չեմ կարող։ Դե, Անտո՛ն, մեզ ցույց կտա՞ս, թե ինչ ես շինում։

— Թող Օսյան իր երկու դրոշմանիշը պահ տա ինձ, այն ժամանակ ես նրան վաղը ցույց կտամ։ Միևնույն է, նա այդ դրոշմանիշներից բան չի հասկանում։

— Դու ճխլտել ես դրոշմանիշները,— փքվելով մրթմրթաց Օսյան։

— Կարելի է հարթել,— առաջարկեց Անտոնը։— Հետո, ես չեմ ճխլտել, դու ինքդ ես ճխլտել։

— Լավ, ինչ ուզում եք արեք, բայց առանց կռվի,— հաշտեցրեց հայրը, իսկ Օսյան քնելու կգնա իննին, ինչպես միշտ։

***

Հաջորդ օրը, նախաճաշի ժամանակ, Օսյան շարունակ նայում էր խոհանոցի վերևի թարեքին։ Այնտեղ, մայրիկի հին խալաթի մեջ փաթաթված, սահնակի պես մի բան էր դրված։ «Ինչո՞ւ է այդքան շուտ սահնակ շինել Անտոշկան», զարմացավ նա։ Սակայն այդ օրը դպրոցում այնքան հետաքրքիր բան կար, որ Օսյան տարօրինակ սահնակի մասին մտածելն էլ մոռացավ։

Ընթրիքից հետո հայրն աչքով արեց Անտոնին։

— Դե, ինչ է, սկսե՞նք արարողությունը,— խորամանկորեն ժպտաց նա։

Անտոնը լրջացավ և մայրիկին խոհանոցից դուրս կանչեց։ Հետո մտավ պատուհանի մոտի անկյունը, որտեղ կախված էր մոր վերարկուն ու գլխաշորը։ Անտոնը ետ տարավ վերարկուն ու գլխաշորը և բոլորը պատի մեջ տեսան շագանակագույն, հարթ հղկված մի գրադարակ։ Նա հայելու պես փայլում էր արևի տակ։ Նրա երկու դարակներում դրված էին Օսյայի նկարազարդ հին գրքերը և մի քանի նորերը։ Օսյան զարմանքից

*քարացավ։ Հայրն արմունկով հրեց Անտոնին։*

*Անտոնը հազաց ու սկսեց.*

*— Օ՛սյա, քանի որ դու արդեն կարդալ գիտես, մենք բոլորս՝ հայրիկը, մայրիկը և ես նվիրում ենք քեզ այս գրադարակը, որպեսզի դու գրքերդ լավ պահես ու դես-դեն չգցես։ Ես շինել եմ գրադարակը, իսկ հայրիկն ու մայրիկը քեզ համար գրքեր են գնել, որ դու ավելի լավ սովորես կարդալ։ Ահա ամենը։*



Անտոնը նրա տարավ վերարկուն...

*— Դե, Օ՛սվալդ Կրաստին,— խոսեց հայրը և ձեռքը դրեց որդու ուսին.— հիմա դու գիտուն ես և ինքդ պիտի քեզ համար գրադարան կազմես։ Եթե գիրքը սիրես, քո այս փոքրիկ գրադարակը տարիների ընթացքում գրքերի մեծ պահարան կդառնա։*

*Օսյան շնորհակալություն հայտնեց բոլորին, արագ բացեց իր պայուսակը, հանեց ընթերցարանը և նրա միջից վերցնելով իր երկու դրոշմանիշը, մեկնեց Անտոնին։*

*— Վերցրու,— ասաց նա եղբորը,— ինձ պետք չէ, իսկ դու կկպցնես դրոշմանիշների քո ալբոմի մեջ։*

*Անտոնն ուրախացավ, վերցրեց դրոշմանիշներն ու ասաց.*

*— Ինչքա՜ն լավ ես հարթել։ Կարդանք, տեսնենք, թե ինչ է գրված այս մեկի վրա. «Հոդված 121. ՍՍՌՄ քաղաքացիներն ունեն կրթության իրավունք»։ Սա Կոնստիտուցիայից է,— ավելացրեց նա։— Այս մյուսի վրա էլ մարդիկ գրում են՝ «Հանուն խաղաղության»։*

Թարգմ. Գ. ԲԵՍ

# ՈՒՍՈՒՑՉՈՒՀԻՆ

*Վ. ՏԱԼՅԱՆ* *Նկ. Մ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ*

1

*Այդ օրն Անիկը տուն եկավ աչքերը կարմրած և թաշկինակն ամբողջովին թաց։ Մոր հարցերից ոչ մեկին կանոնավոր պատասխան չտվեց։ Երբ մայրը գնաց խոհանոց ճաշը տաքացնելու, Անիկը պայուսակից մի երկծալ թուղթ հանեց ու դրեց մոր սեղանին։ Նրա դողացող ձեռքը մնաց ուսուցչուհու ուղարկած թղթիկի վրա։ «Ի՜նչ վատ եղավ», մտածեց նա և գնաց լվացվելու։*

*Շուտով մայրը վերադարձավ, ամանը դրեց ճաշասեղանին և արդեն նկատած թուղթը վերցնելով, կարդաց մակագրությունը։ «Եթե ուսուցչուհին լավ բանի համար ինձ դպրոց կանչեր, Անիկն ինքը այս թուղթըն ինձ կտար։ Ուրեմն ինչ-որ արտակարգ դեպք է պատահել»։*

*Ճաշից հետո Անիկը լուսամուտների դրսի կողմը շարված ծաղիկներն էր ջրում, երբ մայրը մոտեցավ նրան և ասաց.*

*— Ծաղիկնե՞րն ես ջրում։*

*— Այո, մայրի՛կ,— տարօրինակ հարցից զարմացած պատասխանեց Անիկը։*

*— Եթե չջրես ու չխնամես, այդ հոտավետ*

ու գեղեցիկ ծաղիկները կթառամեն ու կըփտեն...

Անիկը մի պահ դադարեց ջրելուց և խորազնին նայեց մոր տխուր դեմքին։ «Ի՞նչ է ուզում ասել», անցավ նրա մտքով։

Վերջին ծաղկամանը բավականին հեռու էր պատշգամբից։ Անիկը դժվարությամբ, ձգվելով ու կողքը ցավացնելով, մնացած ջուրը լցրեց այդ ծաղկամանում բացված ծաղկի վրա և ցնցուղը մի կողմ դնելով նստեց մոր կողքին։ Երկուսն էլ լուռ էին։

— Լավ ես խնամում ծաղիկները, աղջի՛կս. հոգատար ես և ուշադիր,— նորից լռությունը խզեց մայրը։

— Իհարկե, հապա ինչպե՞ս,— հարցրեց Անիկը։

— Ուրիշ կերպ չես կարող։ Իսկ մի՞թե ձեր ուսուցչուհին պակաս հոգատար և ուշադիր է ձեր նկատմամբ։

Անիկը գլուխը կախ լսում էր մոր խոսքը։ Նա արդեն հասկանում էր, որ մայրը մտահոգված է ուսուցչուհու գրությամբ...

— Իսկ դուք ինչո՞վ եք պատասխանում ձեր ուսուցչուհու հոգատարությանը...

— Մայրի՛կ,— բացագանչեց Անիկը։

— Ահա,— ձեռքի գրությունը բարձրացնելով արտասանեց մայրը.— ինչո՞ւ է կանչում՝ չգիտեմ, ոչ լավ բանի համար երևի...

Ասաց և հուզված գնաց սենյակ։ Անիկն շտապեց նրա հետևից և պատմեց այդ օրվա դեպքի մասին։

2

Երրորդ քառորդի վերջին էր դա, երբ արդեն սկսել էին կրկնել անցածը։ Դասի ժամանակ Անիկը կրկին անհանգիստ էր. այս կողմն էր դառնում, այն կողմն էր նայում։ Բաց լուսամուտից հետևում էր ծիծեռնակների սրընթաց թռիչքին, հետևը նստած ընկերուհում էր ժպտում, կողքի նստարանի աղջկան ծամածռություններով աշխատում էր ծիծաղեցնել։

— Անի՛կ, հերիք է, լսիր,— մի երկու անգամ դիտողություն արեց Շաղիկը։

— Ի՛հ, գիտեմ էլի, նոր բան հո չի,— ձեռքն անփութորեն թափահարելով, կիսաձայն ասաց Անիկը, բայց մի րոպե իբր թե ուշադիր լսեց ուսուցչուհու հարցերն ու ընկերուհիների պատասխանները։

Մի քիչ հետո նա շուռ եկավ ու հետևի աղջկան ծիծաղելի մի հարց տվեց։ Երկուսն էլ փռթկացրին։ Շաղիկն ու մի քանի ընկերուհի խեթ-խեթ նայեցին նրանց։

— Անի՛կ, բավական է խոսես,— ասաց ուսուցչուհին կավճի կտորը ձեռքն առնելով։

Շատերը զայրացկոտ հայացքներ նետեցին Անիկի վրա։ Այդ զայրույթից Շաղիկն էլ բաժին հասավ։ Շաղիկը հիշեց ջոկատի հավաքույթը, ընկերուհիներից մեկի խոսքն այն մասին, թե՝ «Անիկի մոտ ես նստում ու չես կարողանում զսպել նրան»։ Եվ Շաղիկն ուշադրությունը բևեռեց ընկերուհու վրա։ Նա աշխատում էր դասի նյութին վերաբերող հարցեր տալ, դժվարանալու դեպքում օգնել նրան։

Անիկն ուրախ էր, որ Շաղիկն սկսեց խոսել իր հետ ու հիմա էլ ինքն էր նրան անհանգստացնում հարցերով։ Վերջին մի երկու հարցին ճիշտ պատասխան գտնելով տարված Շաղիկն ուշադրություն չդարձրեց, թե ինչ էր պատմում գրատախտակի մոտ կանգնած ընկերուհին։

— Շաղի՛կ, հապա կրկնիր տեսնեմ,— հանկարծ հնչեց ուսուցչուհու ձայնը։

Շաղիկը ոտքի կանգնեց, հայացքը մեխեց գրատախտակին, հարցական նայեց Ավետյանին, բայց ոչ մի խոսք չասաց։ Հետևի ընկերուհին շշուկով հուշեց. բայց Շաղիկը ո՛չ պարզ լսեց նրա հուշածը, ո՛չ էլ կուզենար այդ ձևով պատասխանել։ Անիկը սարսափած նայում էր Շաղիկին։ Նա ճիշտ է, շատ էր խանգարել ընկերուհուն, բայց հիմա սրտանց կուզենար, որ իր կողքին նստող, իր լավը ցանկացող Շաղիկը լավ պատասխաներ։ Բայց Շաղիկը լուռ էր։

— Ահա թե ի՜նչ,— ցավով արտասանեց ուսուցչուհին.— իմ լավ աշակերտուհիներից մեկը չի կարողանում կրկնել ընկերուհու պատմա՞ծը։

— Ես օգնում էի... Անիկին...— փղձկաց Շաղիկը և ընկնելով նստարանին, դեմքը թաղեց թևերի մեջ։

— Ես այսօր շատ դժգոհ եմ քեզանից, Շաղի՛կ,— ասաց ուսուցչուհին և ինչ-որ մի կետ դրեց մատյանում։

Բոլորն զգացին, որ Ավետյանի ձայնը դողաց։

Ամենից շատ Անիկն էր ազդվել։ Նա ապշած նայում էր սրան ու նրան, աղաչական հայացքներ էր ուղղում ուսուցչուհու կողմը. բայց չէր համարձակվում մի բառ անգամ ասել։

Ավետյանը ձեռքի մի շարժումով դասը պատմող աշակերտուհուն տեղը նստեցրեց, ապա ինքն էլ, ասես հոգնած, նստեց աթոռին ու ասաց.

— Տանը կկրկնեք...

Զանգը հնչեց։ Ավետյանն առանց աղջիկներին նայելու, մատյանը թևի տակ սեղմած, հըպարտ կեցվածքով դուրս եկավ դասարանից։

Մյուս ժամին Անիկն էլ, Շաղիկն էլ լուռ ու տխուր հետևում էին դասին։ Դասամիջոցին դասարանում մնացած ընկերուհիները շատ կարծիքներ էին հայտնել, աղմկել, կշտամբել նրան։ Նրանցից մի քանիսն էլ կարեկցանքով շրջապատել էին Շաղիկին ու թշնամական հայացքներ նետել Անիկի վրա։ Ընկերուհիներից ոչ մեկը չէր կարող հասկանալ, թե որքա՜ն ծանր էր այդ հարվածը նրա համար։ «Դա ավելի շուտ ինձ էր վերաբերում», ասում էր հիմա նա մտքում։

Երբ դասամիջոցներից մեկի ժամանակ աղջիկները վազեցին ջոկատավարի մոտ այդ խրթին հարցը պարզելու, նա ծիծաղեց և Շաղիկի ականջին փսփսաց.

— Կուժ քեզ եմ ասում, կուլա դու իմացիր։

Նույն բանը նա ասաց ջոկխորհրդի նախագահ Զարիկին։ Բայց Անիկի համար անհասկանալի մնաց ընկեր Ավետյանի մտածված ու խելացի այդ քայլը։

Եվ ահա Անիկը տխուր-տրտում պատմում էր մորը այդ դեպքի մասին։ Իսկ մայրը նրա պատմությունը լսելուց հետո ուրախ ծիծաղեց։

— Ծիծաղելու ոչինչ չկա, մայրի՛կ.— նեղացավ Անիկը։

— Դու և նա միասին գնացեք ընկեր Ավետյանի տուն և ներողություն խնդրեցեք։

— Հենց հիմա գնում եմ, մայրի՛կ, խոսքուն,— հանկարծ շտապեց Անիկը, գրկեց, պինդ համբուրեց մոր այտը և դուրս թռավ։

Մայրը միայն դռան թխկոցը լսեց։

— Ցտեսություն, մայրի՜կ,— փողոցից հնչեց Անիկի ձայնը։

Մայրը դուրս եկավ պատշգամբ ու թեթևացած նայեց աղջկա յուրահատուկ քայլվածքից օրորվող գլխին։

Մի քիչ հետո Շաղիկն ու Անիկը թեթևի



— Մայրի՛կ,— բացագանչեց Անիկը։

տված, ոտքերի թաթերի վրա մոտեցան Գայանե Ավետյանի դռանը։ Դուռը բաց արեց ուսուցչուհու տղան, մորը նման մի կոմերիտական։ Աղջիկները նրան մատներով զգուշացրին, որ ձայն չհանի, թե ովքեր են եկել։

Ուսուցչուհին սեղանի մոտ նստած տետրեր էր ուղղում։ Սեղանի վրա տետրերի մի բարձր ու քառակուսի սյուն էր բարձրացել։ Ավետյանը մեկ առ մեկ վերցնում էր, խնամքով, բայց արագ ուղղում էր սխալները։ Երբ նա տեսնում էր, որ տետրը սպիտակ

կազմ չունի, գլուխը խրատական տարուբե-րում էր, սեղանի մի անկյունից վերցնում էր սպիտակ թուղթ և կազմ էր սարքում։ Ապա վրան գրում էր ինչ-որ պետք է և դնում մի կողմ։

Աղջիկները մի րոպե հիացած նայում էին ուսուցչուհուն։

— Ամեն օր այսքա՞ն տետր,— զարմա-ցան աղջիկները։

— Ինչքա՞ն է աշխատում...

Ավետյանն զգաց, որ զանգից հետո ոչ ոք չերևաց ու վեր կացավ։ Երբ նա տեսավ աղ-ջիկներին, ծիծաղեց ու ձեռքերն առաջ պար-զած դեմ եկավ։ Առաջինն Անիկն սկսեց խոսել։

— Խոսելու մեջ միշտ առաջինն ես, Անի՛կ,— կատակեց ուսուցչուհին.— Երևի սրանից հետո կարգապահության մեջ էլ առաջինը լինես, հը՞։

Ավետյանը մոտեցավ ու շոյեց նրա կըտ-րած գլուխը։

— Ընկե՛ր Ավետյան, ախր ե՛ս... Շաղիկի



— Ընկեր Ավետյան, ախր ե՛ս...

ստացած հանդիմանությունը ինձ է վերաբե-րում։ Ամեն ինչ իմ պատճառով եղավ... Ես վերջին անգամ խոսք եմ տալիս, պիոներա-կան խոսք, որ... Եվ կտեսնեք, որ կկատա-րեմ...— կցկտուր ասաց Անիկն ու փարվե-լով ուսուցչուհուն, գգվեց նրան։

— Դե լավ էլի, Անի՛կ,— թախանձեց Շա-ղիկը։ Նա ձեռքերի մեջ անդադար տրորում էր իր նուրբ թաշկինակը։

Ավետյանը երկուսին էլ առավ իր գիրկը, ապա մտերմաբար հրեց դեպի աթոռները։

— Նստեցեք, սիրելինե՛րս, նստեցեք. իսկ դու, Վահրա՛մ, թեյ պատրաստիր։

Աղջիկները վեր թռան տեղներից ու մի-մյանց ընդհատելով աղմկեցին.

— Վա՜յ, ի՞նչ կարիք կա, ընկե՛ր Ավետ-յան...

— Շնորհակալություն, ընկե՛ր Ավետյան...

Մյուս օրը Անիկի մայրը և ուսուցչուհին ուսուցչանոցում նստած երկար զրուցեցին Անիկի, Շաղիկի և շատ ուրիշ գործերի մա-սին։

***

Անցան օրեր։ Մայիսի քսանին հնչեց ուս-ման տարվա վերջին զանգը։ Երկու օր հետո Գայանե Ավետյանի դասարանը պետք է տար առաջին քննությունը։ Բայց ուսուցչու-հին չէր անհանգստանում։ Նա համոզված էր, որ փայլուն քննություն կտա ոչ միայն Շաղիկը, այլև Անիկը, որն այն դեպքից հետո քանի գնաց լավացավ ու ընկերուհիների հետ միասին համարձակ ու հաստատ քայլերով եկավ դեպի տարեվերջ։ Ավետյանն ամռանն էլ մի քանի անգամ նրանց հետ գնաց զբոսանքի, նավակով զբոսնեց Սևանի կապույտ ալիքների վրա։ Աղջիկները կրկին ան-գամ հաճույքով լսեցին սիրելի ուսուցչուհու քաղցր ու զնգուն ձայնը, երգեցին նրա հետ, սեղան նստեցին և մի քանի անգամ նկարվեցին։

Գայանե Ավետյանը հետագայում շատ էր հիշում այդ օրերը և ամեն անգամ, երբ հանդիպում էր աշակերտուհիներից մեկին, գրկարաց գնում էր ընդառաջ ու կրկնում էր.

— Սիրելի՜ս, չարաճճի աղջի՜կս...



# ՃԱՆԱՊԱՐՀՈՐԴՈՒԹՅՈՒՆ

*Լ. ԲՈՐԻՍՈՎ*

Սովետական հայտնի մանկական գրող Արկադի Պետրովիչ Գայդարը 1941 թվականի աշնանը զոհվեց Հայրենիքի համար մղվող մարտերում։ Կարճատև եղավ նրա կյանքը, բայց հարուստ է նրա թողած գրական ժառանգությունը։ Գայդարը գրել է շատ հետաքրքիր պատմվածքներ ու վիպակներ՝ «Դպրոցը», «Ռազմական գաղտնիքը», «Թմբկահարի ճակատագիրը», «Չուկը ու Գեկը» և այլն։ Կարդալով այդ գրքերը, երեխաները ծանոթանում են Չուկի ու Գեկի, քաջ ձիավոր Ալկայի, Թիմուրի, Ժենյայի և շատ ուրիշների հետ։

Գայդարի գրքերը երեխաներին դաստիարակում են անսահման հայրենասիրությամբ, սովորեցնում նրանց լինել կարգապահ, խիզախ, պայքարում աննահանջ, չվախենալ դժվարություններից։ Մեր երկրում չկա մի պիոներ, որ չճանաչի Գայդարին, չսիրի նրա գրքերը, օրինակ չվերցնի նրա գրվածքների հերոսներից։

Գայդարն այսօր էլ ապրում է մեզ հետ։ Նրա անունով են կոչվում շոգենավեր, փողոցներ, գրադարաններ, դպրոցներ։ Նրա մասին գրվում են գրքեր, հորինվում են երգեր։ Սովետական ժողովուրդը հիշում և հարգում է իր սիրելի գրողի հիշատակը։ Այս տարվա փետրվար ամսին լրանում է Արկադի Գայդարի ծննդյան 50 տարին։

Տպագրում ենք Լ. Բորիսովի պատմվածքը Գայդարի մասին։

*Արկադի Պետրովիչ Գայդարը մի քանի օրով եկավ Լենինգրադ։ Նա ուզում էր նավակով մի փոքր ճանապարհորդություն կատարել Նևայի վրա մինչև Լադոգա լիճը, այնտեղ որս անել, երկու օր ապրել հյուղակում, իսկ հետո նավակով էլ վերադառնալ քաղաք։*

*Իմանալով, որ Գայդարը ուղեկից է փնտրում, ես գնացի նրա մոտ և ասացի.*

*— Ինձ վերցրեք ձեզ հետ, Արկա՛դի Պետրովիչ։ Ես լավ գիտեմ Նևան, ծանոթ եմ և՛ աջ, և՛ ձախ ափերին։ Շատ տարիներ առաջ ես ոտքով շրջել եմ մինչև Շլիսսելբուրգ և ետ։ Համաձայն եմ թեկուզ մի տարի հյուղակում ապրել։*

*Գայդարը ժպտաց, մի ձեռքով խփեց իմ ուսին, մյուսով՝ մեջքիս և ասաց.*

*— Սիրելի կապիտանի օգնակա՛ն, անցեք կադրերի բաժին և հայտնեցեք, որ ես ձեզ վաղվանից ընդունում եմ ծառայության։ Պաքսիմատը և վերմակները պետական են, իսկ ջուրը դուք պիտի բերեք։ Աշխատավարձը գործարքով՝ կիլոմետրերով։ Համաձա՞յն եք։*

*Մյուս օրը Գայդարը նավակ ձեռք բերեց, նավախելին քաթանից խցի նման մի բան սարքեց, այնտեղ դարսեց մեր բոլոր մթերքները՝ պահածոներ, թխվածքներ, պաքսիմատ, շոկոլադ, թեյ։ Ես բերեցի պղնձե մի մեծ թեյաման, երկու կաթսայիկ, թավա, պատառաքաղներ, դանակներ, ալյումինե ափսեներ. վառոդի և լուցկու պաշար վերցրինք։ Գայդարը բերեց խարույկի համար մանր կոտրտած տաշեղներով լիքը պարկը։*

Մենք դուրս եկանք շաբաթ օրն առավոտյան։ Եղանակը շատ լավ էր։ Նախօրյակին ուժեղ անձրև էր տեղացել, բայց ռադիոն մի շաբաթ առաջ խոստացել էր չորություն և «ամպամածություն առանց էական տեղումների»։ Մենք թիավարում էինք հերթով։ Գայդարն անդադար պատմում էր իր անցյալի մասին. այն մասին, թե ինչպես է կռվել սպիտակների դեմ, ինչպես է որս արել Մոսկվայի մոտերքը և մի անգամ մոլորվել։ Ես մեծ հաճույքով լսում էի այդ հիանալի մարդուն։

Արևը բարձրացավ։ Գայդարը վերցրեց թիակները։ Եկավ իմ պատմելու հերթը։ Գայդարին հետաքրքրում էին այն գրողները, որոնց հետ ես հանդիպել էի իմ պատանեկության օրերին։ Ես Գայդարից յոթ տարով մեծ էի։ Նա լսում էր ինձ ուշադիր, երբեմն թողնում թիակները և այն ժամանակ մենք մի կողքով ետ էինք գնում։ Այդ ժամանակ երևացին ամպերը։ Նրանք հավաքվեցին մի կույտի մեջ և դարձան սև, բրդոտ, առանց գլխի շան նման մի ամպ։ Տաս-տասնհինգ րոպե անց նա վերածվեց թխպի. այդ թուխպը ծածկեց ամբողջ երկինքը։ Գայդարն ասաց, որ ըստ երևույթին շուտով կսկսվեն «ոչ էական տեղումները»։

Ամենից առաջ ամպրոպն այնպես որոտաց, որ Գայդարն իսկույն ինձ հարցրեց. չե՞մ զղջում արդյոք, որ իր հետ այդպիսի անուրախ ճանապարհորդություն եմ կատարում։

— Սիրում եմ ամեն տեսակ փորձանքներ և արկածներ,— ասացի ես։— Եկեք մոտենանք ափին, մտնենք նավախուց և քնենք։ Իսկ այդ ժամանակ եղանակը կտեսնես, որ կլավանա։

Մոտեցանք ափին, նավակը կապեցինք ու մտանք ինքնաշեն նավախուցը։ Դա հսկայական հովանոցի նման մի հյուղակ էր։ Պառկում ենք, աչքերս փակում, բայց քնել չենք ուզում։

— Արտասանեցեք Պուշկինից, ինչ որ գիտեք,— խնդրեց Գայդարը։

Ես սկսեցի արտասանել։ Արտասանեցի այն բոլորը, ինչ որ գիտեի անգիր։ Հետո Գայդարը խնդրեց արտասանել Նեկրասովից։

— «Սառնամանիք, կարմիր քթիկը» գիտե՞ք։

— Գիտեմ։

— Արտասանեցեք, սիրելի կապիտանի օգնակա՛ն։ Կյանքումս չեմ մոռանա։

Եղանակը րոպե առ րոպե ավելի զզվելի էր դառնում. ամպրոպը հեռացավ մի կողմ. բայց թափվում էր մանրահատ և սառը անձրևը։

— Ա՛խ, ի՞նչ ցավալի է,— ասաց Գայդարը.— ամենագլխավորը մոռացել ենք՝ կարթերը։ Ձուկը հենց այսպիսի եղանակին պետք է որսալ։ Հե՛յ, տղա՛,— հանկարծ գոչեց նա։

Ափին կանգնած էր մի տղա և ձուկ էր որսում։

— Տղա՛,— նորից գոչեց Գայդարը,— կարթդ ծախիր։

Տղան հարցրեց, թե մենք ովքեր ենք. իսկ երբ իմացավ, որ այդ կլոր գլխով մարդը մանկական գրող Գայդարն է, հենց նույն րոպեին նվիրեց հավաքած որդերը, պահեստային կեռիկներ տվեց և հարցրեց, թե էլ ուրիշ ինչ է պետք։ Գայդարն սկսեց որս անել։ Բռնեց տասնյակ ինչ-որ մանր բաներ, իսկ հետո, երբ մեծ ձուկը քիչ էր մնում նավակը տեղից շարժեր, Գայդարը կարթը տվեց տղային ու ասաց.

— Ինքդ կառավարիր, քո բախտն է։ Ձգիր, ձգիր, հորդ և մորդ ճաշի համար։

— Կողք-կողքի կանգնած մի՛ խոսեք,— խուլ շշնջոցով արտասանեց տղան, ինչ-որ շարժումներ անելով։

Վերջապես ափ դուրս քաշվեց մի հսկայական բրամ, տղան կրծքով ընկավ նրա վրա և, թվում էր, մոռացավ ամեն ինչ աշխարհում։

— Ձեր ձեռքը թեթև է,— հևալով և դառնալով դեպի Գայդարը խոսեց երջանիկ ձկնորսը։

— Մատներդ խոթիր խռիկների տակ, քո ձուկն է։ Կարթդ լարիր,— հետևեց հրամանը, երբ քարից խլացած բրամը վեր թռավ, շուռ եկավ մյուս կողքին և անզգայացավ ավազի վրա։

Գայդարը և տղան կես ժամ էլ որս արեցին. բայց հանդիպում էին միայն մանրուքի։

Հրաժեշտ տալով ձկնորսին, չվերցնելով

նրանից կարթը, մենք հեռացանք: Թիավարելը շատ դժվար էր. ախր մենք գնում էինք հոսանքին հակառակ: Երեք ժամ հետո մենք նորից այնպիսի անձրևի տակ ընկանք, որ հեռու գնալն անհնար էր: Գայդարն առաջարկեց ափ իջնել, նավակը բրեզենտով ծածկել և ճանապարհը շարունակել ոտքով: Քառասուն մետր մեզանից այն կողմ աղմը-



Գայդարն սկսեց պատմել մեր ճանապարհորդության մասին:

կում էր կեչու, եղևնիների և սոճիների խառն պուրակը:

— Խորանանք դեպի այդ թավ թփուտը, մարտնչենք վագրերի ու ընձառյուծների դեմ,— բոլորովին լուրջ ասաց Գայդարը,— իսկ այնտեղ կտեսնենք. թերևս մոտիկ տեղում ինչ-որ օվկիանոսի կհանդիպենք, կհարձակվենք ստրուկներ տեղափոխող նավի վրա, կազատենք դժբախտներին և նրանց հետ միասին ինչ-որ բան կմտածենք: Իսկ այժմ...

Գայդարը ծոցատետրից մի թերթ պոկեց, ինչ-որ բան գրեց և դրեց նավակի մեջ բրեզենտի տակ:

— Գրեցի, որ մենք հարյուր հոգի ենք, զինված ենք թնդանոթներով և գնդացիրներով, խնդրում ենք ձեռք չտալ մեր նավաքարավանին: Դե՛հ,— մտածեց ինչ-որ բան և ծիծաղելով շարունակեց.— դուք կլինեք կապիտան Հատտերասը, իսկ ես... ես ինչպե՞ս կոչվեմ: Ո՞ւմն եմ ես նման: Ես կլինեմ Պասպարտուն,— ուրախ արտասանեց Գայդարը և մատները չխկացրեց, կարծես մանկական ատրճանակից կրակեց:— Պասպարտուն ինձ պես կլոր դեմք ունի, թիկնավետ է:

Ես ժպտացի և ասացի, որ Պասպարտուն ռուսական վերնաշապիկ և սապոգներ չէր հագնում: Գայդարը պատասխանեց, թե դա դեռ հարց է. հագնում էր, թե՞ չէր հագնում: Նկարներով դատել չի կարելի: Օրինակ՝ Տուրգենևը. պատկերում են մորուքով, իսկ մորուքը նա սկսեց կրել քառասուն տարեկանից հետո: Այդպես էլ այստեղ է:

— Ես Պասպարտուն եմ,— որոշեց Գայդարը.— աջ ուսն առաջ, քայլով մա՛րշ:

Մենք անցանք պուրակը, դուրս եկանք եզրը, և այնտեղ տեսանք մի քանի երկնագույն տնակ. իսկ ուղիղ մեր հանդեպ՝ եղևնու փշատերևով զարդարված դարբաս:

«Տրամվայի պարկի Կոնյաշինի անվան պիոներական ճամբար»,— կարդացինք մենք

դարբասի վերևը փակցրած կարմիր կտավի վրա։ Գայդարն ասաց.

— Այսպես, պարոն Հա՛տտերաս, մտնում ենք։ Կօգնեք ինձ ամեն ինչում։

Մենք ներս մտանք պիոներական ճամբարի տերիտորիան։ Մեզ դեմ վազեցին մի տղա և մի աղջիկ, իրենց անվանեցին հերթապահներ և հարցրին, թե ի՞նչ ենք ուզում մենք։ Գայդարը հայտնեց, որ ինքը Պասպարտուն է, ծառայում է ինձ՝ կապիտան Հատտերասի մոտ։ Մենք մտադիր ենք մի բան կարդալ պիոներների համար։ Երկու ժամ առաջ մենք ավարտեցինք աշխարհաշուրջ ճանապարհորդությունը։

— Սպասեցեք այստեղ,— ասացին հերթապահները և ետ դառնալով վազեցին ինչ-որ տեղ։

Հինգ րոպե հետո նրանք վերադարձան իրենց ընկերների ամբողջ բազմության և ճամբարի բոլոր պետերի ուղեկցությամբ։ Գայդարը նրանց էլ ասաց, թե ինքը Պասպարտուն է, իսկ ես՝ կապիտան Հատտերասը։ Եվ միայն մի մարդու՝ ճամբարի պետին նա ինչ-որ բան շշնջաց. և ես հասկացա, որ այստեղ արդեն առանց Պասպարտուի և ճանապարհորդի կարելի է հարավային բևեռ գնալ։

Մեզ առաջարկեցին ճաշել, իսկ հետո սկսվեց ամենահետաքրքիրը։ Եղանակն սկըսեց պարզել. ամպերի մեջ երկնագույն լուսամուտներ երևացին։ Թփուտի եզրին հավաքվեց առնվազն երկուհարյուր մարդ՝ տղա և աղջիկ։ Ավագ ջոկատավարը հայտարարեց.

— Վատ եղանակը, փոթորիկները և մըրրիկները երկու խիզախ ճանապարհորդի ստիպեցին ընդհատել իրենց ուղևորությունը և ափ իջնել։ Այժմ նրանք կպատմեն այն մասին, թե որտեղ են եղել և ինչ են տեսել։ Խնդրեմ, ընկե՛ր Պասպարտու։

— Առաջին գործը՝ ողջույն ձեզ, պիոներնե՛ր, Աֆրիկայի, Ավստրալիայի և այլ մայրցամաքներից, որտեղ մենք եղել ենք,— սկսեց Գայդարը։

Մեր ունկնդիրները միահամուռ ծափ տվին։

— Երկրորդ,— շարունակեց Գայդարը և լռեց։ Մի փոքրիկ, կապույտ մայկայով տղա, որ նստած էր գետնին նրանից երկու մետր հեռու, բարձրացավ, մի քայլ արեց դեպի առաջ և բարձրաձայն հայտարարեց.

— Իսկ ես տեսել եմ ձեր դիմանկարը ամսագրում. դուք Գայդարն եք։

Եվ հանգիստ նստեց խոտի վրա։ Փոքրիկ տղայի հարևանները ախ քաշեցին։ Այդ «ախը» էլեկտրական կայծի նման անցավ բոլոր պիոներների միջով. իսկ հետո վրա հասավ լռությունը, և այդ հանդիսավոր լռության մեջ լսվեց հիացական մի շշուկ։

— Ա՛յ, դա ճիշտ է։

— Ախր դա Գայդարն է,— գոչեց վերջին շարքերում կանգնած տղան։— Երեխանե՛ր, մեզ մոտ է եկել Արկադի Գայդարը։

Բոլորը վեր կացան և ծափահարեցին։

— Գայդա՜ր, Գայդա՜ր,— լսվեց բոլոր կողմերից,— պատմվածք կարդացեք։ Պատմեցեք, թե ինչպե՞ս ընկաք այստեղ, ի՞նչ եք անում, ո՞վ է ձեզ հետ եկած մարդը։

Գայդարը նույնիսկ չժպտաց։ Շարժելով գլուխը և սեղմելով ուսերը, նա դիմեց ինձ.

—Սիրելի կապիտան Հա՛տտերաս, խընդրում եմ՝ պարզել այս թյուրիմացությունը։ Ինձ ընդունում են ինչ-որ Գայդարի տեղը։

— Ես կհայտարարեմ ձեր մասին, Արկադի Պետրովիչ,— ասացի ես նրան.— այդպես անհամեմատ ավելի հետաքրքիր կլինի։

Եվ հայտարարեցի։ Մեր լսարանը լռեց։ Կարծես լսվում էր, թե ինչպես է թիթեռնիկը թևերը թափահարում։ Գայդարը սկսեց պատմել մեր ճանապարհորդության մասին, հետո աննկատելի անցավ գրքին։ Գրողը հանգամանորեն պատասխանում էր պիոներների հարցերին իր պատմվածքների և վիպակների բախտի մասին։

Երեկոյան դեմ սկսվեց ամպրոպ՝ տեղատարափի հետ միասին։ Մենք ստիպված եղանք մնալ գիշերելու պիոներական ճամբարում։ Քնեցինք միայն առավոտյան դեմ։ Գայդարն ինչ-որ բան գրեց իր ծոցատետրում. ես պատասխանեցի նրա կարճ հարցերին։

Առավոտյան տասին մեզ արթնացրեց շլացուցիչ արևը։

— Լողանա՞նք,— հարցրեց Գայդարը։

Հետո մեզ պահեցին ճամբարում։ Առաջարկեցին մնալ, մինչև որ եղանակը բացվի.

բայց Գայդարը անհանգիստ, տաքարյուն մարդ լինելով, շտապում էր։

Նավակում բրեզենտի տակ մենք գտանք դաշտային ծաղիկների՝ երիցուկների, դաշտային մանուշակների, վայրի աստղածաղկի, հաղարջի բազմաթիվ փնջեր։ Կանգ առանք ափի մոտ և փնջերը նվիրեցինք նրանց, ովքեր մեզ դուր էին գալիս։

— Ի՞նչ եք կարծում,— անսպասելի հարցրեց ինձ Գայդարը,— տղաները կհիշե՞ն, թե ինչպես մենք նրանց մոտ հյուր էինք։

— Կհիշե՜ն։

— Դե լա՛վ է։ Հարկավոր է այնպես ապրել, որպեսզի ավելի մեծ ուրախություն պատճառել մարդկանց, որպեսզի հետո նրանց հիշողությունները հետաքրքիր, հարուստ լինեն։

Լադոգա լճում այդպես էլ չհաջողվեց լինել. անձրևները խանգարեցին։ Գլուխներս ծածկեցինք բրեզենտով և ետ վերադարձանք։

— Թերևս այդպես ավելի լավ է,— ասաց Գայդարը։— Ձկներ չորսացինք, լճի թռչուններ չփախցրինք, բայց դրա փոխարեն բարեկամներ գտանք։

---

# ՁՄԵՌԸ ԿՏՈՒՐԻ ՏԱԿ

ԱՆ. ՍԵԿՈՅԱՆ

Ֆոտո Հ. ՀԵՔԵՔՅԱՆԻ

Ձմեռ էր։ Վաղուց արդեն մերկացած ծառերի ճյուղերին նստում էր ձյունը։ Վաչիկը դպրոցից տուն էր դառնում ընկերոջ հետ։ Նրանք ոչ թե քայլում, այլ սահում էին ամբողջ ճանապարհին։ Տեսնելով, որ ընկերը կողքին չէ, Վաչիկը ետ նայեց. Խորենը կպել էր ինչ-որ խանութի ցուցափեղկի։

— Այդ ի՞նչ է։

— Արի, արի, Վաչի՛կ։

— Ի՞նչ կա։

— Արի տես, շո՛ւտ։

— Այ քեզ բա՜ն,— ընկերոջը մոտենալով բացագանչեց Վաչիկը,— այս ձմռան կիսին կարմրաթուշ դեղձը որտեղի՞ց։

— Բա մանիշակագույն սալո՞րը,— վրա բերեց Խորենը։

Նրանք թևքով մաքրեցին ցուցափեղկի ապակուն նստող ձյունը։

— Ա՜, տոնածառի խաղալիքնե՛ր են,— գլխի ընկավ Վաչիկը։

Խաղալի՞ք, այդքան լավ պատրաստվա՞ծ։ Բայց մթերային խանութում ինչո՞ւ պետք է վաղաններով խաղալիքներ դնեին։ Վերջապես ընկերները համաձայնվեցին, որ դրանք արհեստական մրգեր էին և շարունակեցին իրենց ճանապարհը։

Երբ ճաշից հետո մայրը սեղանին դրեց նույն այդ դեղձից ու սալորից, Վաչիկը խորամանկորեն ժպտաց ու ետ քաշվեց սեղանից։

— Ձեմ խաբվի՜... իսկական չեն...

Փոքր քույրը զնգուն ձայնով ծիծաղեց։ Նա ձևացնում էր, թե իբր ինքը կերել էր արդեն։ Մայրը հանգիստ վերցրեց մի սալոր ու դրեց բերանը։ Տղայի դեմքի ժպիտը կամաց-կամաց փոխվում էր զարմանքի, ապա նորից ժպտի։ Վաչիկն էլ մեկնեց ձեռքը։ Սալորը փոքր ինչ սառն էր, բայց համեղ էր և թարմ, ինչպես ծառից նոր քաղածը։ Տղան նոր միայն հիշեց, որ նախորդ ձմռանը մայրը շատ անգամ էր գնել սառեցրած տանձ, խնձոր. բայց սառեցրած դեղձ ու սալոր առաջին անգամն էր ուտում։ Այդ ինչպե՞ս և որտե՞ղ էին պահել միրգը, որ այդքան թարմ էր մնացել։

Ահա թե ինչը պատճառ դարձավ, որ Վաչիկենց դասարանը մի օր էքսկուրսիա գնաց սառցարան-կոմբինատը։

Ճանապարհին երեխաները այս ու այն կողմից բազմաթիվ հարցեր էին տալիս ուսուցչուհուն։

— Ընկե՛ր Մարգարյան, ինչպե՞ս են պաղպաղակ պատրաստում։

— Քառակուսի սառույցները որտեղի՞ց են բերում։

— Այդ բոլոր հարցերն այնտեղ կտաք,— հանգստացնում էր ուսուցչուհին։

Վերջապես երեխաները մտան սառցարան-կոմբինատի ընդարձակ բակը։ Նրանց դիմավորեց աշխատակիցներից մեկը։

— Երեխանե՛ր, ընկեր Դաղբաշյանը պաղպաղակի ցեխի վարիչն է,— ասաց ուսուցչուհին։— Նա ձեզ կբացատրի, թե ինչպես են պատրաստում զանազան տեսակի պաղպաղակներ, ինչպես են սառեցնում և պահպանում մթերքները։

Երեխաների աչքերը փայլեցին ուրախությունից. ափսոս, որ ձմեռ էր և իրենք չէին կարող ուզածի չափ պաղպաղակ ուտել։

Խումբը սանդուղքով բարձրացավ ու մտավ սրահներից մեկը։ Այստեղ իրար կողքի կանգնած էին մինչև առաստաղը հասնող կլոր մեքենաներ, որոնք «Տանկեր» էին կոչվում։

— Պաղպաղակ պատրաստելու համար հարկավոր են հետևյալ հիմնական նյութերը,— մոտենալով մեքենաներին սկսեց ցեխի վարիչը։— Դուք գիտեք այդ նյութերը. փոշի, խտացրած կամ թարմ կաթ, շաքար,



Սառցարանի կոմպրեսորների բաժինը։

յուղ, ջուր։ Այս մեքենաների մեջ են լցվում կարագն ու կաթը և տրորվում այնքան ժամանակ, մինչև կարագը բոլորովին լուծվում է կաթի մեջ։

Այստեղից հատուկ խողովակների միջով հեղուկը փոխադրվում է կողքի սենյակում գտնվող մեքենաների մեջ, որտեղ մյուս նյութերի հետ միասին եփվում է 65—85 աստիճան ջերմության տակ։

— Վա՜յ, պաղպաղակը եփվո՞ւմ է,— չհամբերեց երեխաներից մեկը։

— Դրանով մենք ոչնչացնում ենք պաղպաղակի մեջ եղած միկրոօրգանիզմները,— շարունակեց ընկեր Դաղբաշյանը։— Ապա խառնուրդը քամվում է, այնուհետև, մեր լեզվով ասած, հոմոգենեզացվում է, այսինքն համասեռվում։ Հետո հարթ սառեցուցիչների միջոցով սառեցվում է մինչև 4—5 աստիճան։

Ընդարձակ սրահում դրված էր բազմաթիվ քառակուսի կաղապարների բաժանված մի մեծ սեղան։ Հենց այստեղ էլ ջրի կամ աղաջրի միջոցով պաղպաղակները սառեցվում էին մինչև 25 աստիճան ցրտության տակ։ Դրանից հետո կտրատվում էին հարյուր գրամանոց քառանկյունիների և փաթաթվելով թղթերի մեջ՝ ուղարկվում էին կոփման։

Երեխաներին մի հարց էլ էր հետաքրքրում. ամռանն ինչպե՞ս էին սառույց ստանում կամ սառեցնում պաղպաղակներն ու այլ մթերքները։

— Հենց հիմա կտեսնեք,— վրա բերեց ցեխի վարիչը։— Այժմ մտնում ենք այն ցեխը, որը մեզ անընդհատ ցրտություն է տալիս։

Աշակերտները աղմուկով դուրս եկան բաժնից, բակով անցան և մտան մի նոր սրահ։ Կարծես խուք մեկ արած նրանք բռնեցին քթերը։ Այդ սենյակը լցված էր սուր, անախորժ հոտով։ Այստեղ գործում էին խոշոր հաստոցները։

Մինչ տղաները քչփչոցով կարծիքներ էին փոխանակում, ցեխի վարիչը բացատրեց.

— Այս մեքենաներն ամիակի միջոցով անընդհատ ցրտություն են տալիս բոլոր բաժիններին, մինչև 33 աստիճան։

Ուրեմն այստեղ, այս ծանր գազի մեջ էր ամբողջ գաղտնիքը։ «Ամիակ... ցրտու-

թյուն...» անդադար կրկնում էր Վաչիկը: Հենց հաջորդ օրը նա կհարցնի քիմիայի դասատուին, կխնդրի մանրամասն բացատրել:

Երեխաները շուտ դուրս եկան այդ բաժնից: Երբ ցեխի վարիչը բաց անելով հաջորդ բաժնի դուռը ներս թողեց խմբին, նրանք զարմացական բացականչություններ արձակեցին. սրահում էին գտնվում իրենք, թե՞ Հյուսիսային բևեռում: Առաստաղից շերտերով սառույց ու ձյուն էր կախված:

— Կտուրը կա, իսկ ներսը ձյուն է,— բացականչեց Վաչիկը:

— Սա բնական ձյուն չի,— հանգիստ բացատրեց ցեխի վարիչը,— ամիակի միջոցով ներսի օդը սառել է ու ձյուն է դարձել:

Սրահում շատ ցուրտ էր, բայց երեխաները չէին կարողանում կտրվել այդ գեղեցիկ տեսարանից. և՛ ձյան շերտերը, և՛ սառցի լուլաներն ընդունել էին հեքիաթային ձևեր: Այդպես է լինում միայն ձմռանը՝ լուսամուտի վրա: Նրանք ապշում էին իրենց աչքերի առջև երևացող նրբորեն հյուսված պատկերներից և չէին ուզում հավատալ, որ մարդկային ձեռք չէր կպել դրանց:

Թվում էր, թե դրանից հետո ոչ մի բան չէր կարող նրանց զարմացնել: Բայց հաջորդ սրահը նույնքան հետաքրքիր էր, որքան և նախորդը: Այստեղ ամբողջ հատակը ծածկված էր բազմաթիվ կաղապարներով: Էքսկուրսավարի բացատրությունից Վաչիկն այսքանը միայն կարողացավ հասկանալ: Մի բաժնում ամիակ էր լցվում, որը սառեցնում էր իրենից մետաղե բարակ պատով բաժանված աղաջուրը, իսկ վերջինս սառույց էր դարձնում կաղապարների մեջ լցված մաքուր ջրերը:

Վերջապես երեխաները մտան նույնպիսի ձյունապատ սրահներ, որտեղ կախված էին մորթված ու մաքրված անհամար կենդանիներ, թղթերի մեջ փաթաթված հավերով ու սագերով լի արկղներ: Վերևի հարկում պահվում էր յուղը, խտացրած կաթը, տարբեր տեսակի մրգեր, որոնք այս էքսկուրսիայի առիթ եղան:

— Այս բոլոր մթերքները գտնվում են 25—30° սառնության մեջ: Հետո սրանք կիջեցվեն պահեստ: Այնտեղ երբեք չեն փչանա, չնայած որ 12° ցրտության տակ են գտնվելու:

— Իսկ ինչո՞ւ մեր նկուղի խնձորները փչացան,— հարցրեց Խորենը.— չէ՞ որ այնտեղ էլ ցուրտ էր:

— Այստեղի և ձեր նկուղի մեջ մեծ տարբերություն կա,— ներողամտորեն նկատեց ընկեր Դաղբաշյանը,— երբ տատանվող ջերմաստիճանում է ցուրտը դիպչում մրգին փչանում է. իսկ մենք սառեցնում ենք միանգամից: Այդ դեպքում մրգի բոլոր բջիջները կանգ են առնում, քարանում: Եթե սառեցրած միրգը տանենք տուն, թարմ, հյութալի, համեղ կդառնա, իսկ եթե փորձենք նորից սառեցնել՝ կփչանա: Բայց սպասեցեք,— ավելացրեց նա,— թերևս ձեզանից ոմանք կցանկանային պաղպաղա՞կ ուտել:

Ընկեր Դաղբաշյանի ակնարկից երեխաները գլխի ընկան, որ էքսկուրսիան ավարտված էր: Տղաներից մեկը նկատեց.

— Դրա համար մենք ամռանը կգանք ձեզ մոտ:

Բոլորը ծիծաղեցին:

Երբ նրանք վերջապես դուրս եկան շենքից, այնքան հաճելի էր դրսում, որ բոլորն իրար նայեցին:

— Կարծես գարուն լինի...

— Մի քիչ տաքանանք, տղանե՛ր,— ձայնում էին այս ու այն կողմից:

## ՊԱՅՈՒՍԱԿ

*Ա. ՄԱՐԳԱՐՅԱՆ*

Քեզ հետ ենք մենք միասին,
Լուսաբացից մինչ կեսօր,
Ուրախ ճամփին դպրոցի,
Դասարանում լուսավոր:

Դու շատ մաքուր ես պահում,
Տետրակներս իմ բոլոր,
Դասագրքերս սիրուն
Միշտ կոկիկ ու միշտ էլ նոր:




*Մ. ՄԱԴԱԹՅԱՆ*

Վալերի Պավլովիչ Չկալովը ծնվել է Գորկու մարզի Վասիլևո-Սլոբոդա գյուղում 1904 թվականի փետրվարի երկուսին: Նրա հայրը կաթսայագործ բանվոր էր: Փոքրիկ Վալերին



Վ. Պ. Չկալով

հաճախ հոր հետ գնում էր դարբնոց և օգնում նրան: Ընտանիքի հոգսը ստիպեց Վալերիկին շատ վաղ հասակից սկսել իր աշխատանքային կյանքը:

Քաղաքացիական պատերազմի տարիներին Վալերին կամավոր մեկնում է Կարմիր Բանակ: Այնտեղ նա ծառայում էր որպես ինքնաթիռներ վերանորոգող վարպետ: Այդ ժամանակ նա ամբողջապես տարված էր օդաչու դառնալու մտքով: Նրա երազանքն իրագործվում է պատերազմի վերջերին: Չկալովը մտնում է օդաչուական դպրոց: 1923 թվականին նա բարձր գնահատականներով ավարտում է դպրոցը և նշանակվում նոր ինքնաթիռներ փորձարկող օդաչուի աշխատանքի:

Վերջապես Չկալովը գտավ հարազատ միջավայրը: Նա վարպետորեն տիրապետում էր օդաչուական արվեստին և ինքը հնարեց բարձրագույն պիլոտաժի մի քանի նոր ձևեր:

Մեծ օդաչուն իր ամբողջ կյանքի ընթացքում փորձարկել և ուսումնասիրել է ավելի քան յոթանասուն տարբեր կոնստրուկցիաների ինքնաթիռներ, կատարել է հերոսական թռիչքներ: Մի անգամ նա 45 րոպեում 250 մահվան օղակ է կատարել: Բոլորին հայտնի է նրա համարձակ թռիչքը Նևա գետի կամրջի տակով:

Թռչել բոլորից բարձր, բոլորից հեռու, բոլորից արագ. թռչել գեղեցիկ և ամենադժվարին պայմաններում ու ձևերով. այս էր Չկալովի նշանաբանը:

Չկալովն անընդհատ կատարելագործվում էր: Միաժամանակ նա անեցնում էր տասնյակ երիտասարդ օդաչուներ: Նորակառույց ինքնաթիռներ փորձարկելու ժամանակ ցուցաբերած քաջության համար խիզախ բազեն պարգևատրվում է Լենինի շքանշանով:

Նույնիսկ ամենադժվար րոպեներին Չկալովը պարաշյուտից չէր օգտվում:

Մի օր Ի. Վ. Ստալինը Չկալովին հարցընում է.

— Ինչո՞ւ դուք պարաշյուտից չեք օգտըվում և սովորաբար մինչև վերջին րոպեն աշխատում եք մեքենան փրկել:

Չկալովը պատասխանում է, որ թռչում է չափազանց արժեքավոր մեքենաներով և ափսոս է առանց ղեկավարման թողնել նրանց:

— Սովորաբար աշխատում եմ փրկել մեքենան, նրա հետ և իմ կյանքը:

— Ձեր կյանքը մեզ համար ավելի թանկ է, քան ուզած մեքենան,—ասում է Ստալինը:

— Ես ինքնաթիռի ղեկը կպահեմ, քանի դեռ իմ ձեռքերում ուժ կա և իմ աչքերը տեսնում են երկիրը,— պատասխանում է Չկալովը:

Չկալովն անընդհատ երազում էր թռչել Հյուսիսային բևեռ: Այդ մասին զրուցելիս Ի. Վ. Ստալինը հարցրեց.

— Ինչո՞ւ անպայման թռչել Հյուսիսային բևեռ: Օդաչուներին ամեն ինչ թվում է հասարակ բան...

Եվ Ստալինը առաջարկեց թռչել՝ Մոսկվա—Պետրոպավլովսկ Կամչատկայի վրա: 1936 թվականին Չկալովը Բայդուկովի և Բելյակովի հետ այդ թռիչքը կատարեց 56 ժամ 20 րոպեում: Նրանք անցան 9374 կիլոմետր տարածություն և վայրէջք կատարեցին Ուդդ կղզում: Այդ կղզին հետագայում վերանվանվեց Չկալով: Դժվարին պայմաններում կատարած այս թռիչքի համար կառավարությունը նրանց շնորհեց Սովետական Միության Հերոսի կոչում: Հենց նույն տարին Չկալովն ընդունվեց Կոմունիստական պարտիայի շարքերը:

Անվեհեր օդաչուն չէր հրաժարվել Հյուսիսային բևեռ թռչելու իր ցանկությունից: Մի տարի չանցած նա կատարեց ավիացիայի պատմության մեջ չտեսնված Մոսկվա—Հյուսիսային բևեռ—Հյուսիսային Ամերիկա անվայրէջք թռիչքը: 12000 կիլոմետր տարածությունը նա իր օդանավով անցավ 63 ժամ 25 րոպեում: Երբ Չկալովն ու իր ընկերները վայրէջք կատարեցին Ամերիկայում, նրանց անմիջապես շրջապատեցին լուսանկարիչները, թերթերի թղթակիցները և շատ ուրիշներ: Վայրէջքից հետո ամերիկացի միլիոնատերերից մեկը Չկալովի հետ հետևյալ զրույցն ունեցավ.

— Դուք հարո՞ւստ եք,— հարցրեց նա:

— Այո, շա՜տ հարուստ եմ,— պատասխանեց Չկալովը:

— Ինչո՞ւմն է կայանում ձեր հարստությունը,— հարցրեց կապիտալիստը:

— Ես ունեմ 170 միլիոն:

— 170 միլիո՞ն... Ի՞նչ, ռուբլի, թե՞ դոլլար,— ապշած հարցրեց միլիոնատերը:

— Ոչ, 170 միլիոն մարդ, որոնք աշխատում են ինձ համար, այնպես, ինչպես որ ես եմ աշխատում նրանց համար:

Ամբողջ աշխարհը գիտե այս խոսակցությունը: Չկալովի պատասխանը ցույց է տալիս, թե ինչ մտքեր և ապրումներ ուներ նա. ցույց է տալիս նրա ամբողջ էությունը:

Չկալովը մեր օդագնացության առասպելական հերոսներից մեկն էր:

1938 թվականի դեկտեմբերի տասնհինգին նրան հանձնարարված էր փորձարկել նոր կոնստրուկցիայի մի մեքենա: Եվ նա առանց սատանվելու սուրաց դեպի երկինք: Դա նրա վերջին թռիչքն էր: Այդ օրը նա զոհվեց:

Սովետական ժողովուրդը միշտ հիացմունքով ու ջերմ սիրով է հիշում իր սիրելի զավակին, հպարտ բազեին: Եվ հազարավոր պիոներներ երազում են դառնալ այնպիսի օդաչու, ինչպիսին Վալերի Պավլովիչ Չկալովն էր:



# ԴՐՈՒԺԻՆԱՆԵՐՈՒՄ, ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ, ՕՂԱԿՆԵՐՈՒՄ

## ԱՅՍՊԵՍ ԵՆ ԴԻՄԱՎՈՐՈՒՄ

*Երբ մտնում ենք Երևանի Ձերժինսկու անվան դպրոցի պիոներական սենյակը, հենց առաջին սեղանի վրա իսկույն տեսնում ենք ալբոմներ, թղթեր, թերթեր, մատիտներ, ներկեր... Մյուս սեղաններին շախմատի տախտակներ՝ անավարտ պարտիաներով: Մի ուրիշ կողմում լցված են տարբեր հանքաքարեր, նկարներ, մոդելներ... Առաջին*

*հայացքից թվում է, թե այստեղ տիրում է ինչ-որ խառնաշփոթություն: Բայց դա միայն առաջին տպավորությունն է: Դասամիջոցի զանգը հնչելուց անմիջապես հետո պիոներական սենյակը նորից վերածվում է ուրախ աշխատանոցի: Տարբեր ջոկատների պիոներներն աշխատում են շուտ ավարտել սկսած գործը:*

*Դասերից առաջ ու դասամիջոցներին Կոստյա Սատինին միշտ կարելի է տեսնել այստեղ: Նա փայտի փոքրիկ կտորները խնամքով հարթում է, ներկում և ամրացնում առագաստավոր զբոսանավի մոդելին: Կոստյան ուզում է, որ ՀամԼԿԵՄ 12-րդ համագումարի պատվին պատրաստվող մոդելը լինի գեղեցիկ ու լավ: Նա մոդելի յուրաքանչյուր մասն ամրացնելիս հիշում է, որ ինքը դրուժինայի խորհրդի վերջին նիստում պարտավորություն է վերցրել՝ այսուհետև ավելի լավ սովորել և լինել կոմերիտմիության արժանավոր փոխարինողների առաջին շարքերում:*

*— Ինձ համար մեծ պատիվ է պատրաստել մի լավ նվեր,— ասում է Կոստյան:*

*Այդպիսի պարտավորություն են ստանձնել նաև 12-րդ ջոկատի մյուս պիոներները: Բորիսը, Էդիկը, Վալերիկն ու Արկադին զարդարում են իրենց ջոկատի հուշատետրը, որտեղ մանրամասն գրված է հետաքրքիր հավաքույթների, էքսկուրսիաների, կոլեկտիվ կինոդիտումների, տարբեր խմբակների և այլ աշխատանքների մասին:*

*Երրորդ ջոկատի պիոներներին հանձնարարված է պատրաստել ցուցահանդես: Ահա Սամվելը, Էդիկն ու Լյովան սեղանների վրա դասավորում են դպրոցի պիոներական կազմակերպության պատմությունը պատկերող նկարներ, եղբայրական ռեսպուբլիկաներից ու ժողովրդական դեմոկրատիայի երկրներից ստացված նամակներ, հանքաքարերի տեսակներ, գրքեր, կրծքանշաններ: Այդ ցուցահանդեսը յուրաքանչյուր այցելուին պատմելու է այն բոլոր աշխատանքների մասին, որը տարիներ շարունակ կատարել են այդ դպրոցի պիոներները:*

*Պիոներական սենյակի մյուս անկյունում խաղում են պատանի շախմատիստները: Նրանց շուրջը բոլորած պիոներները անհամբերությամբ դիտում են խաղը: Բոլորի համար էլ հետաքրքիր է գիտենալ, թե ով կդառնա դրուժինայի ՀամԼԿԵՄ 12-րդ համագումարի պատվին կազմակերպված շախմատային տուրնիրի չեմպիոնը: Այստեղ աշխատում են նաև դրուժինայի մյուս բոլոր ջոկատները: Նրանք էլ մեծ եռանդով պատրաստվում են՝ «Կոմունիստական պարտիայի հոգատարությունը երեխաների նկատմամբ», «Մեզ դաստիարակում է կոմերիտմիությունը» և այլն թեմաներով հավաքույթների:*

*Ա. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ*

---

# ՄԵՐ ՆԱՄԱԿԸ

Դասերը վերջացան: Ջոկատի պիոներները այս ու այն կողմ հավաքված աշխուժորեն զրուցում էին ինչ-որ հարցի մասին:

— Ընկեր Մնացականյանը գալիս է,— հանկարծ դասարան մտնելով ասաց ջոկատի խորհրդի նախագահ Անահիտը:

Ներս մտավ ավագ ջոկատավարը: Բոլորը ողջունեցին նրան:

— Շուտով տեղի է ունենալու ՀամԼԿԵՄ 12-րդ համագումարը,— սկսեց ավագ ջոկատավարն իր զրույցը:— Դրուժինայի խորհուրդը որոշել է ողջույնի նամակ ուղարկել համագումարին: Այդ նամակում դուք կպատմեք ձեր ուսման և աշխատանքների մասին: Նամակը կստորագրեն դրուժինայի բոլոր պիոներները: Ջոկատներն արդեն պատրաստում են դպրոցի առօրյան պատկերող նվերներ: Ձեր ջոկատը պետք է պատրաստի դրուժինայի աշխատանքները պատկերող ֆոտո-ալբոմ:

Երբ ավագ ջոկատավարը վերջացրեց իր խոսքը, ձայն խնդրեց առաջին օղակի օղակավար Ալմաստը:

— Մեր օղակում արդեն խոսել ենք և որոշել պատրաստել նյութեր ու նկարներ հայրենի երկիրն ուսումնասիրելու աշխատանքների մասին:

Ջոկատի շատ պիոներներ ելույթ ունեցան և պատմեցին իրենց գործերի մասին: Այժմ մենք սպասում ենք այն օրվան, երբ մեր պատրաստած նվերներով կմտնենք պիոներական սենյակ և կստորագրենք համագումարին ուղղված ողջույնի նամակը:

*ՋՈՒԼԻԵՏԱ ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ*

*(№ 51-րդ դպրոցի 3-րդ ջոկատի ջոկատավար)*

# ԱԶԱՏՎԵՑԻ՛Ն

Խ. ԳՐԻԳՈՐՅԱՆ

Նկ. Է. ՄԿՐՏՉՅԱՆԻ

Մեր կոլտնտեսության թռչնաբուծական ֆերման գտնվում է գյուղից ոչ հեռու՝ Շամբ կոչված գյուղատեղում։ Ֆերմայի առջևից հոսում է Որոտան գետը և կենդանություն պարգևում արևից տոչորվող բուսականությանը։ Ժայռի գլխից նայողը գետի ձախ ափին, մարգագետնի վրա կնշմարի սպիտակ շարժուն կետեր։ Դրանք ֆերմայի «լեգգորն» ցեղի հավերն են, որոնք շատ ձու են ածում, ընտիր տեսակի փետուր և համեղ միս ունեն։

Ֆերմայի հսկիչն է Ստեփան քեռին։ Նրան օգնում է իր կրտսեր տղան՝ Գառնիկը, մանավանդ երեկոները հավերը հաշվելիս։ Նրա ուշադրությունը միշտ հավերի կողմն է լինում, քանի որ խորամանկ աղվեսը թփերի տակից հաճախ է հարձակվում հավերի վրա։

Մի օր թռչունները թևերը թափահարելով հանկարծ սկսեցին խուճապահար կչկչալ, հովիտը աղմուկով լցնելով։ Դարձյալ աղվեսն էր։ Ստեփան քեռին ձեռնափայտը շպրտեց աղվեսի վրա, և սա տխուր-տրտում փախավ դիմացի ձորը...

Սկսվեցին ձմռան մառախլապատ օրերը։ Ձյունը ծածկեց ֆերմայի շրջակայքը։ Հանդում որսը պակասեց։ Այժմ քաղցած աղվեսըն ավելի հաճախ էր երևում ֆերմայի մոտերքում։ Երբ արեգակը մայր էր մտնում, նա գաղտագողի գալիս էր, թռչնաբուծարանի տափակ կտուրին նստում և ագահությամբ նայում հավերի երամին։

Այդ օրն էլ նա եկավ, երկար նայեց հավերին, սուր մագիլներով քանդեց կավածածկ կտուրն ու մտավ ներս, մի աքլոր վերցրեց և դուրս փախավ։ Հավերի կչկչոցից Ստեփան քեռին արթնացավ. մթության մեջ հազիվ գտավ ձեռնափայտը և շտապեց հավանոց՝ բայց ուշ էր։ Աղվեսը մոտիկ թփի տակ արդեն ժնգժնգալեն լափում էր աքլորին։

Առավոտյան Ստեփան քեռին թարմ ձյան վրա գտավ աղվեսի հետքը, գնաց հետքով, բայց ապարդյուն։

«Ես քեզ աքլոր ցույց կտամ», մտքում սպառնում էր Ստեփան քեռին։

Կեսօր էր, երբ Գառնիկը գյուղից եկավ և ուրախ-ուրախ բարևեց հորը։ Բայց հայրը տխուր էր։ Երկուսն էլ սկսեցին մտածել, թե ինչպես բռնեն աղվեսին։

— Ճար չկա, պետք է թաքնվենք հավանոցում,— վճռեց հայրը։

Պարզկա գիշեր էր։ Քամու հետ նրանց



Ստեփան քեռին ձեռնափայտը շպրտեց աղվեսի վրա...

ականջին էր հասնում գայլի ոռնոցը։ Հավանոցում նստած Ստեփան քեռին սպասում էր աղվեսին։ Շատ սպասելուց կոպերը ծանրացան։ Սկսեց ննջել, ապա քնեց։ Հանկարծ հավերն սկսեցին կչկչալ։ Վեր թռավ՝ աղվեսը փախել էր։ Լուսաբացին ստուգեց, որ մի հավ էլ չկա։

Առավոտյան նա գնաց որսորդ Գարեգնի մոտ և ասաց.

— Ա՛յ տղա, մի ագռավ խփիր ինձ համար։

Մյուս օրը Ստեփան քեռին մի ագռավ ստացավ։ Մի փոքրիկ ասեղ խրեց ագռավի մսի կտորի մեջ, ծածկեց և ներսի կողմից դրեց աղվեսի բացած անցքի մոտ։ Ապա գլուխը դրեց բարձին ու քնեց։ Գառնիկի աչքերին քուն չէր գալիս։ Կես գիշերին աղվեսը հուշիկ քայլերով մոտեցավ անցքին։ Գառնիկն այդ զգում էր, բայց ձայն չհանեց։ Աղվեսը հափ արավ, կուլ տվեց ագռավի մսի կտորը, ասեղն էլ հետը...

Գառնիկի ծիծաղի ձայնից հայրն արթնացավ։

— Ա՛յ թե տարար, հա՜,— ասաց նա։

Մի քանի օր աղվեսը չէր երևում։

Դրսում սուլում էր ցրտաշունչ քամին, ձյունը խփում էր հավանոցի դռանը։ Սովահար աղվեսը ոտները հազիվ քաշ տալով մոտեցավ իր փորած անցքին։ Նրա աղիքները կտրտվում էին ցավից. կուշտ ուտած սեղը տեսել էր իր գործը։

Մահը մոտ էր. աչքերը շաղվել էին։ Անցքով ներս մտավ, իսկ Ստեփան քեռին վրա հասավ և անցքը ծածկեց։ Ապա վառեց մոմը, և տեսավ, որ աղվեսն անկյունում կուչ է եկել. ուժը չի պատում բարձրանալ։

— Եկա՞ր... բարով ես եկե՜լ,— ասում էր Ստեփան քեռին պարանը պատրաստելով։ Նրա ձայնից Գառնիկը արթնացավ։ Հայր ու որդի պարանը գցեցին աղվեսի վիզն ու առավոտյան հանձնեցին որսորդ Գարեգնին։

Այդպես մեր կոլտնտեսության թռչունները ազատվեցին իրենց խորամանկ թշնամուց։

# «ԱՇԽԱՏԱՍԵՐԸ»

Հ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

Նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

Հասմիկը տեղավորվեց սեղանի հետևը, բաց արեց տետրակը, հաճույքով շոյեց սպիտակ ու փայլուն էջը, թաթախեց գրիչը և... հենվեց աթոռի թիկնակին։

Սեղանի վրա դրված էր մի մեծ խնձոր։ Մայրիկն էր դրել։ Հասմիկի համար էր։ Հասմիկը խնձոր չէր սիրում, բայց մտածեց.

«Երբ մայրիկն է դրել, ուրեմն պետք է ուտել։ Չի կարելի մայրիկի ասածը չկատարել։ Ձախ ձեռքով խնձորը կուտեմ, իսկ աջով՝ կգրեմ»։

Նա կրծեց խնձորը, գրիչը մի անգամ էլ թաթախեց։ Այն է, կարծես թե սկսելու էր, երբ նորից մտածեց.

«Ինչպե՞ս կարելի է միաժամանակ և՛ ուտել, և՛ պարապել։ Ավելի լավ է ուտեմ վերջացնեմ, հետո սկսեմ գրել»։

Այդպես էլ արեց։ Դանդաղ, քանի որ արագ ուտելը հակաառողջապահական է, կերավ խնձորը, գտավ թաշկինակը, սրբեց բերանը և նորից նստեց իր տեղը։

«Հիմա կարելի է սկսել», ուրախ մտածեց նա, որովհետև իրոք կարելի էր սկսել. միաժամանակ կարելի էր և չսկսել։ Նա նորից թաթախեց գրիչը և... հիշեց հայրիկի խոսքերը.

«Տուն գալուց անմիջապես հետո պետք է լվացվել»։

Հասմիկն այդպես էլ արեց։ Վեր կացավ, լվացվեց, այն էլ օճառով, սրբվեց և նորից նստեց։ Նա թաթախեց գրիչը...

«Ի՞նչ վատն եմ, շարունակ իմ մասին եմ



«Ձախ ձեռքով խնձորը կուտեմ, իսկ աջ ձեռքով կգրեմ»։

Մտածում. չեմ հետաքրքրվում, թե ինչպես է պարապում Ռուբիկը»: Եվ նա գնաց մյուս սենյակը՝ Ռուբիկի մոտ: Երկրորդ դասարանի աշակերտ Ռուբիկը տետրը քթին դրած, մեծ ջանասիրությամբ, խոշոր թվանշաններով, բազմապատկում է վեցը երեքով և գրում՝ քսանմեկ:

Նկատելով Հասմիկին, նա վեր է թռչում տեղից:

— Երբ սխալ տեսնես՝ չասես... որ ուղղեմ, տետրս կկեղտոտվի:

Բայց Հասմիկը անաչառ է. նա ցույց է տալիս Ռուբիկի սխալը: Ռուբիկը ծռմռում է դեմքը, փորձում է քսանմեկը տասնութ դարձնել, բայց մաքուր չի ստացվում և թվերը տգեղանում են: Բարկությունից նա սկսում է լաց լինել: Հասմիկը նորից է հիշում իր տնային աշխատանքի մասին: Վերադառնում է, նորից նստում սեղանի մոտ և թաթախում գրիչը: Եվ այն է, պետք է սկըսեր, երբ հանկարծ հիշում է.

«Լավ կլիներ մի անգամ էլ խոհանոց գնայի. չէ՞ որ մայրիկին էլ պետք է օգնել»: Եվ նա ուրախ գնում է խոհանոց:

— Ինչո՞վ քեզ օգնեմ, մայրի՛կ:

Մայրիկը գրկում, համբուրում է Հասմիկին և ասում.

— Դու գնա՝ դասդ գրիր:

Հասմիկը դժգոհ վերադառնում է, նստում բաց տետրակի առաջ և նորից թաթախում գրիչը: Բայց նկատում է, որ մթնել է և ոչինչ չի երևում: Նա երկյուղի մեջ է ընկնում, բայց փորձում է իրեն համոզել, որ ուշ չէ:

«Մթնել է, որովհետև օրը ամպամած է»:

Սակայն երկնքում ամպ չկա: Նա չի համարձակվում ո՛չ ժամացույցին նայել, ոչ էլ լույսը վառել. բայց տետրակի վրա գծերը չեն երևում:Ստիպված նա վառում է լույսը և ավելի է անհանգստանում: «Արդեն մութն է, իսկ ես դեռ ոչինչ չեմ արել»: Երբ նորից գրիչը թաթախում է թանաքի մեջ, հանկարծ հիշում է, որ մինչև քնելը անհագին ժամանակ կա: Դեռ պետք է հայրիկը վերադառնա, թեյեն, խաղան, աղմկեն, գիրք կարդան. այնպես որ, անհանգստանալու փոխարեն ավելի լավ է գնալ, տեսնել ինչ է անում իր միջնակ քույրը՝ Արմինեն, որ սովորում է երրորդ դասարանում:

Նա Արմինեին է մոտենում խիստ կերպարանք ընդունած: Արմինեն թղթե կազմեր էր պատրաստում իր գրքերի համար:

— Այդ ինչո՞վ ես զբաղված... ինչո՞ւ դասերդ չես պատրաստում:

Արմինեն հանկարծ վշտանում է և սովորականից ավելի բարակ ձայնով պատասխանում.

— Ե՞ս... ե՞ս...— ու քիչ է մնում լաց լինի:

— Հասկացի՛ր,— խստությամբ և մեծ քույրերին հատուկ դաստիարակչական տոնով շարունակում է Հասմիկը.— լավ չես անում: Տես արդեն մթնել է, իսկ դու կողմնակի բաներով ես զբաղված, որովհետև ծուլություն ես անում և չես ուզում պարապել:

Արմինեն զարմացած լսում է մեծ քրոջը:

— Ե՛ս... ես բոլոր դասերս պատրաստել եմ, Հասմի՛կ... ա՛յ, ուզում ես՝ նայիր:— Եվ նա ուզում է ցույց տալ տետրակները:

Հանկարծ Հասմիկը շիկնում է: Նա զգում է, որ իր ասած խոսքերը բոլորն էլ իրեն են վերաբերում: Գլուխը կախ, անշշուկ վերադառնում և նստում է սեղանի հետևը:



... վերադառնում և նստում է սեղանի հետևը:

Նա սկսում է գրել, առանց այլևս հիշելու, որ դեռ կարելի էր սանրել մազերը, կտրտել եղունգները, մաքրել կոշիկները, մի բաժակ ջուր խմել և հանգիստ խղճով շատ ու շատ այլ բաներ անել...

## ՀՐԱՉԻԿԻ ՍԱՀՆԱԿԸ

*ՌՈՒԲԵՆ ՂԱՐԻԲՅԱՆ*

Տատը գնաց մաղը բերեց
Կողքին ալյուր և կար դրեց,
Որ այդ մաղով ալյուր մաղի,
Որ այդ կարով խմոր շաղի.
Իր սևաչյա ու ժպտերես
Հրաչիկի այտերի պես
Կլոր, կարմիր գաթա թխի.
Իսկ ինչի՞ մեջ խմոր շաղի...

Այս անգամ էլ տատը բարի
Գնաց՝ փոքրիկ տաշտը բերի.
Գնաց երկար դես-դեն ընկավ,
Շատ չարչարվեց, շատ ման եկավ,
Այս թախտի տակ, այն շորի տակ,
Բայց որտեղի՞ց գտներ տաշտակ.
Տաշտակն ասես թև էր առել,
Ծիտ էր դառել տնից թռել...

Նայեց տատը, տեսավ՝ բակում,
Հրաչիկը իր տաշտակում
Նստած ուրախ և՛ ճչում է,
Ե՛վ սղղում է, և՛ կանչում է.
— Հեյ-հե՜յ, տղե՛րք, հեռու կացեք,
Հեռու կացեք, ճամփա բացե՜ք...

Տատը այստեղ շատ զարմացած
Իր թոռնիկին այսպես ասաց.
— Դու կարող ես անհոգ խաղալ,
Ինչքա՜ն ուզես վազել, սղղալ.
Բայց թե, ասա, ո՞վ է լսել՝
Սահնակի տեղ տաշտակ քշել...

## ԱՐՄԵՆՉԻԿԸ

*ԱՐԱՐԱՏ ԱՅՎԱԶՅԱՆ*

*Նկ. ՀՈՎՀ. ՇԱՎԱՐՇԻ*



Տաս տարեկան է, բայց առավոտյան
Շորերը պառավ տատն է հագցնում.
Դպրոցում տված թվաբանության
Խնդիրն հաշվապահ հայրիկն է լուծում:
Քույրն է հագցնում գուլպա ու կոշիկ,
Նրան գրկում է պապը հևալով,
Մայրն է մատուցում բուլկի ու երշիկ,
Ճաշը կերցնում թեյի գդալով:
— Դե՛, գնա դպրոց, անո՛ւշ Արմենչիկ,—
Ասում է հետո նրան ժպտերես,—
Հետդ դրել եմ պերոժնի, պոնչիկ,
Երբ ուտել ուզես՝ նախաճաշ կանես:
Երկար է թվում դպրոցի ճամփան,
Մայրիկը նրան այնպես է բարձել,
Որ իր գրքերի պայուսակը լայն
Քաղցրավենիքի խանութ է դարձել:

# ՄԻՔԵԼԱՆՋԵԼՈ
(1475—1564)

Միքելանջելո Բուոնարոտին 16-րդ դարի իտալական մեծ քանդակագործ էր, նկարիչ, ճարտարապետ, ռազմական ինժեներ և բանաստեղծ: Նա ծնվել է Ֆլորենցիա քաղաքի մոտ՝ Կապրեզում:

Միքելանջելոն դեռ դպրոցական էր, որ սկսեց տարվել նկարչությամբ և քանդակով: Տասներեք տարեկան հասակում նա մտավ Ֆլորենցիայի հայտնի արվեստագետներից մեկի արվեստանոցը: Մի տարի հետո տեղափոխվեց քանդակագործի արվեստանոց: Այստեղ նա վարպետացավ քանդակագործության մեջ և սկսեց ինքնուրույն աշխատել:

Իր 89 տարվա բեղմնավոր կյանքի ընթացքում Միքելանջելոն ստեղծել է փայլուն աշխատանքներ:

Միքելանջելոյի ամենանշանավոր քանդակագործական աշխատանքներից մեկը «Դավիթն» է: Դա կերտված է մարմարից և գտնվում է Ֆլորենցիայում: Դավթի հոյակապ ֆիգուրայում մեծ վարպետը ցույց է տալիս մարդու մարմնի գեղեցկությունը և ուժը: Հատկապես արտահայտիչ է Դավթի գլուխը՝ իր խիստ և համարձակ հայացքով: Դա ցուցադրում է պատանու անսասան կամքը: Նա պատրաստ է ուզած ռոպեին կանգնել ազատության պաշտպանության դիրքերում: Պատահական չէ, որ «Դավիթը» դարձել է արիության և ազատության նշանաբան:



«Դավիթ» (դետալ):

*Քանդակ ՄԻՔԵԼԱՆՋԵԼՈՅԻ*

Միքելանջելոյի քանդակագործական աշխատանքների մեջ հայտնի է նաև «Մովսեսը», որը ներկայացնում է ահռելի ուժի և խելքի տեր մարդուն:

Շատ հետաքրքիր են Միքելանջելոյի երկու քանդակը՝ «Ըմբոստ ստրուկը» և «Մեռնող ստրուկը»: «Ըմբոստ ստրուկը» քանդակում մենք տեսնում ենք շղթայված, ճնշված, բայց անհաշտ մի ուժ, որը պատրաստ է քանդել կապանքները և պայքարի դուրս գալ:

Հռոմի Սիքստինյան կապելլայի պատերի և առաստաղի հոյակապ որմնանկարները, որ կատարել է Միքելանջելոն, ցույց են տալիս, թե նա ինչպիսի մեծ վարպետությամբ և ուժով է կերտել մարդու մարմնի տարբեր դիրքերը, մարդու հոգու հարստությունները:

Միքելանջելոն եղել է իր ժամանակի առաջավոր մարդկանցից մեկը: Նրա անունը մոտ և հարազատ է սովետական մարդկանց, որոնք պայքարում են իսկական մարդասիրության, խաղաղության և ազատության համար:

*Ն. ԱՂԱՄԱԼՅԱՆ*

# ՀՈՅԱԿԱՊ ԿՈԹՈՂԸ


Կ. ԱՎԵՏԻՍՅԱՆ

(Աշխարհագրական գիտությունների թեկնածու)


Չին ժողովուրդն ունի հինգ հազար տարվա պատմություն։ Նրան հասակակից բաբելոնցիները, ասորեստանցիները, փյունիկեցիները և մի քանի այլ ազգություններ վաղուց անհետացել են։ Նրանց մասին մենք իմանում ենք պատմության դասագրքերից, հուշարձաններից կամ թանգարաններից։ Բայց չին ժողովուրդը մնացել է։ Մնացել են նաև նրա պատմական հուշարձանները։ Այդպիսի հուշարձաններից է չինական մեծ պարիսպը։ Պարիսպը սկսվում է Դեղին ծովի Լյաոդունյան ծոցի ափին գտնվող Շանխայգուան քաղաքից. շրջանցելով Պեկինի հարթությունը, պարիսպը ձգվում է Չինաստանի ամբողջ հյուսիսով և հասնում մինչև Սուչժոու քաղաքից արևմուտք գտնվող Գանսուի նահանգը։



Չինական մեծ պարսպի մի հատվածը։

Մեծ պարիսպը գալարվելով բարձրանում է ջրբաժան լեռները, ապա իջնում հովիտները և դաշտերով ու անապատներով հեռանում է դեպի խորհրդավոր Տիբեթի հյուսիսային սահմանները։ Չինացիները նրան անվանում են Շանգ-Շենգ կամ «Տաս հազար լի[1]) երկարության պարիսպ»։ Նրա երկարությունը զիգզագ ճանապարհով մոտ 4000 կիլոմետր է, իսկ ուղիղ գծով՝ 1800 կիլոմետր։

Չինական մեծ պարիսպն ունի 10 մետր բարձրություն և 4—5 մետր լայնություն։ Յուրաքանչյուր 200 մետրի վրա մի բուրգաձև աշտարակ կա։ Առաջներում այդտեղ պահապան զինվորներ էին կանգնած լինում, որոնք մի տեսակ «հեռագրալարերի» դեր էին կատարում։ Մեկը մյուսին հաղորդելով, նրանք տեղ էին հասցնում մայրաքաղաքից ստացված լուրերն ու հրամանները։ Այնտեղ, որտեղ պարիսպը հատում է ճանապարհները, կառուցված են հսկա դարպասներ, իսկ ռազմական նշանակություն ունեցող կետերում կառուցված են բերդեր։

Մեծ պարսպի շինարարությունն սկսվել է մեր թվականությունից առաջ՝ երրորդ դարում։ 221 թվականին գահ բարձրացավ Ցին դինաստիայի կայսրներից մեկը՝ Ցին Շի-խուանդին։ Նա խիստ փառասեր էր և մտածում էր երկրում այնպիսի վերափոխումներ մտցնել, որոնք կապված լինեն իր անվան հետ։ Եվ ահա չին ժողովրդի արյան ու քրտինքի գնով Ցին Շի-խուանդին կառուցեց մեծ պարիսպը, հյուսիսից Չինաստան ներխուժող թափառական ցեղերից, մանավորապես հոններից պաշտպանվելու, ինչպես նաև նրա տակով դեպի արևմուտք գնացող «Մետաքսի ճանապարհը»[2]) պաշտպանելու համար։ Սակայն կարևորը առաջինն էր։ Պարիսպը փակելու էր այդ թափառական ցեղերի ճանապարհն այնպես, ինչպես պատնեշը հեղեղի առաջ։

Կայսրի հրամանով Չինաստանի բոլոր ճարտարապետները և վարպետները տասը տարում պետք է ավարտեին այդ հսկա շինարարությունը։ Եվ տասը տարի ժամանակով սահմանագլուխ բերվեցին միլիոնավոր մարդիկ։ Պարիսպը կառուցում էին կայծքարերից և այլ քարերից։ Եթե քարերի միացման տեղում ճեղքեր էին նկատվում, աշխատողները մահապատժի էին ենթարկվում։

Այդ հսկա շինարարությունն այնքան քար ու աղյուս կլանեց, որ կարելի էր երկու անգամ քարահյուս գոտի կապել հասարակածի շուրջը։ Նրա կառուցումը շատ ծանր նստեց չին ժողովրդի վրա։ Մարդիկ աշխատում էին առավոտից մինչև ուշ երեկո, արևի ու հողմերի մեջ, սնվելով միայն խաշած բրնձով։ Շատերը չդիմանալով աշխատանքի դաժան պայմաններին, անգութ հսկիչների ծեծին, մահացել կամ վայր են ընկել պարսպի պատերից ու ջախջախվել։ Հինգ հարյուր հազար թշվառներ թաղվել են հիմքերի ու պատերի մեջ։ Դրա համար էլ Շանգ-Շենգը կոչվել է աշխարհի ամենաերկար գերեզմանոցը։

Չինական մեծ պարսպի գոյությունը ցույց է տալիս, որ մեզանից դեռ 2400 տարի առաջ Չինաստա-

1) Մեկ լին հավասար է 500 մետրի։

2) Այս ճանապարհով էին արտահանվում չինական ապրանքները, այդ թվում նաև մետաքսը։ Չինական մետաքսն այնքան հայտնի էր, որ այդ ճանապարհը ստացել էր «Մետաքսի ճանապարհ» անունը։

*նում թավականին զարգացած են եղել շինարարական և մաթեմատիկական գիտությունները, տոպոգրաֆիան և աշխարհագրությունը։ Այդ ժամանակ Չինաստանում այնպիսի գյուտեր և հայտնագործումներ են կատարվել, որ Արևմուտքին դարեր հետո միայն հայտնի դարձան։*

*Այսպես կայսրները եկան ու գնացին, թափառական ցեղերը հայտնվեցին ու ետ քշվեցին, բայց չին ժողովուրդը շարունակեց ապրել։ Չինաստանի բնակչությունն աճեց, երկիրը մեծացավ, պարսպից այն կողմ անցավ։ Տեխնիկան էլ զարգացավ ու պարիսպը կորցրեց իր նշանակությունը։ Նա մնաց որպես չին ժողովրդի աշխատանքի և իմաստության մեծ վկան։*

*Չինական մեծ պարիսպն այժմ միայն պատմական նշանակություն ունի։*

*Պարիսպը այսօր էլ կանգուն է, բայց ժամանակը թողել է նրա վրա իր դրոշմը։ Լավ պահպանվել է միայն լեռներում ու բնակավայրերից հեռու տեղերում։*

# ԳՐՔԵՐԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ

### «Սալյուտ»

Տոնական օր է, հրավառություն։ Մթության մեջ, պարզ ու խաղաղ երկնքում, տարածվում են գունավոր հրթիռներ։ Կենսուրախ երեխաները ձեռքերը վեր են պարզել ու ցնծագին ողջունում են հաղթանակի տոնը...

Ձեզանից շատերը երևի արդեն ունեն մանկական գրող Վիկտոր Վարդանյանի «Սալյուտ» բանաստեղծությունների ժողովածուն, որը լույս է ընծայել Հայպետհրատի մանկա-պատանեկան գրականության բաժինը։ Գրքում կան լավ բանաստեղծություններ, ինչպես օրինակ՝ «Սալյուտ», «Իմ տնկին», «Ձմեռ պապին» և այլն։

«Օդաչու եմ» ոտանավորում պատկերվում է մի տղա, որը ցանկանում է օդաչու դառնալ, սավառնակ ունենալ, թռչել դեպի վեր, սլանալ Մոսկվա։ Նա երազում է տեսնել Կրեմլը։ Նա գիտե, որ Մոսկվան նրան գրկաբաց կընդունի։

Մի ուրիշ բանաստեղծության մեջ հեղինակը նկա-



րագրում է, թե ինչպես փոքրիկ ձկնորսները գործի ժամանակ աղմկում են, իրար չեն հասկանում և այդ պատճառով արդյունքի չեն հասնում։ Նրանց մոտենում է ծեր ձկնորսը և խորհուրդ է տալիս լուռ ու համբերությամբ սպասել։ Հանկարծ կարթը սուզվում է։ Նրանք զգուշությամբ քաշում են կարթը։ Դուրս է գալիս մի մեծ ձուկ։

Լավ են նաև «Կարո՞ղ ես ինձ պես», «Իմ նավակը» բանաստեղծությունները։

Գիրքը մեծ ճաշակով ձևավորել է շնորհալի նկարիչ Վաչե Թևանյանը։

### «Առաջին երգ»

«Առաջին անգամ մանկապարտեզում
Ես «Լենին պապին» երգն եմ սովորել,
Իմացել եմ, որ Լենինն իր կյանքում
Խաղից, ծաղկից շատ ուսումն է սիրել»։

Ամեն տեղ՝ մանկապարտեզում թե տանը, թիթեռ բռնելիս թե անուշահոտ ծաղիկ քաղելիս, այդ երգն է երգել երեխան։ Անցել են շատ օրեր։ Նա շատ նոր երգեր է սովորել, բայց միշտ էլ մեծ սիրով երգում է «Լենին պապին» երգը։



Այս ոտանավորով է սկսում երիտասարդ մանկական գրող Սուրեն Մուրադյանը վերջերս լույս տեսած իր «Առաջին երգ» փոքրիկ գրքույկը։ Գրքում դուք կկարդաք բանաստեղծություն ընկերասեր Լալիկի, աշխատասեր Հասմիկի ու Արմիկի, ծույլ Արայի և հետաքրքրասեր Արայի, ինչպես նաև ցրտից վախեցող Վազգենի ու Վանիի մասին։ Լավ են գրված նաև՝ «Գիքորը», «Առաջին անգամ», «Մանկապարտեզի ճամփան», «Մայրիկները» և մի քանի ուրիշ բանաստեղծություններ։

Ժողովածուն վերջանում է «Այբբենարան» բանաստեղծությամբ, որտեղ ցույց է տրված գիրք սիրող մի երեխա, որը դեռ կարդալ չգիտե, բայց նկարներին նայելով ցանկանում է ամբողջ այբբենարանը մի օրվա մեջ սովորել։

# ՀԵՏԱՔՐՔԻՐ ԺԱՄԱՆՑ

## Աշխարհագրական կրոսվորդ

*ՈՒՂՂԱՀԱՅԱՑ*

1. Ծով՝ Արևելյան կիսագնդում. 2. Աշխարհագրական գոտի. 4. Գետ՝ Հյուսիսային Կովկասում. 5. Թերակղզի Սովետական Միությունում. 7. Պետություն Լատինական Ամերիկայում. 8. ՍՍՌՄ սահմանակից պետություն. 11. Բարձրավանդակ Ասիայում. 12. Հրաբուխ Իտալիայում. 17. Ասիական պետության մայրաքաղաք. 18. Գետ Եվրոպայում. 21. Քաղաք ՌՍՖՍՌ եվրոպական մասում. 22. Արդյունաբերական կենտրոն Ճապոնիայում:

*ՀՈՐԻԶՈՆԱԿԱՆ*

3. Լիճ Սովետական Միության հարավում. 6. Քաղաք-հերոս. 9. Պիոներական ճամբար Ղրիմում. 10. Եվրոպական պետություն. 13. Գետ Աֆրիկայի հյուսիսարևմուտքում. 14. Արդյունաբերական կենտրոն Չեխոսլովակիայում. 15. Ճյուղավորված գետաբերան. 16. Հարավային Բուգ գետի վտակ. 19. Գետ Պակիստանում. 20. Օգտակար հանածո. 23. Գետ Հյուսիսային Ամերիկայում. 24. Քաղաք Վոլգայի վրա:



*Կազմեց՝ Գ. ՄԱՆՈՒԿՅԱՆ*

## Շ ա խ մ ա տ

*(Բաժինը վարում է շախմատի միջազգային վարպետ Հ. ԳԱՍՊԱՐՅԱՆԸ).*

Խնդիր № 1: Մ. Հոգրեֆի:



Մատ 3 քայլից:

№ 1 խնդրում կարելի է մատ անել հետաքրքիր մանյովրի միջոցով:

Էտյուդ № 1: Հ. Գասպարյանի:



Սկսում են սպիտակները, խաղը վերջանում է ոչ ոքի արդյունքով:

№ 1 էտյուդում սպիտակները փրկվում են պատով. այստեղ դժվարը սպիտակների երրորդ քայլն է:

Երեխանե՛ր, դուք էլ փորձեցեք ճիշտ լուծումը գտնել և պատասխանները ուղարկեցեք «Պիոներ» ամսագրի խմբագրությանը:

# ԽԱՂԵՐ

## Հարված զանգին

Օղակավար Համիկը իր հետ բերեց մի փոքրիկ զանգ:

— Այդ ինչի՞ համար է,— հարցրին օղակի պիոներները:

— Խաղի:

— Ի՞նչ խաղի:

— Շա՜տ եք հետաքրքրվում, եկեք հենց հիմա խաղանք,— ասաց Համիկը:

Նա սենյակի մի պատից մյուսը, հատակից մի մետր բարձրությամբ, մի թել կապեց և նրա կենտրոնում կախեց զանգը: Օղակի պիոներներին բաժանեց երկու հավասար մասի և ամեն մեկին տվեց բենիսի մի գնդակ:

— Անա այս գծի վրա կանգնած պետք է հարվածեք զանգին,— ասաց Համիկը:

Կավճով գծված գիծը զանգից հինգ քայլ հեռու էր:

— Ամեն մեկիդ առաջին հարվածը զանգին հաշվում ենք մեկ միավոր, երկրորդ հարվածը՝ երկու միավոր, երրորդը՝ երեք, չորրորդ հարվածը՝ չորս միավոր: Չորս հարվածից հետո, որ քառյակը շատ միավոր շահի, նա էլ կհամարվի հաղթողը,— բացատրեց Համիկը:



Խաղն սկսվեց:

Ամեն մեկը աշխատում էր լավ նշան բռնել և անպայման հարվածել զանգին: Միայն Գոհարիկին և Սուրիկին հաջողվեց երեք գնդակ խփել զանգին:

Երբ միավորները հաշվեցին տեսան, որ երկրորդ քառյակն է հաղթողը:

## Շրջանակի միջով

Հավաքույթի վերջում օղակավար Համիկը մի նոր խաղ էլ կազմակերպեց: Նա բենիսի գնդակները բաժանեց օղակի անդամներին: Նրանց կանգնած տեղից չորս քայլ հեռու, մի պատից մյուսը ձգված թելի կենտրոնից կախեց մի շրջանակ: Դրա տրամագիծն էր տասնհինգ սանտիմետր:

— Այս խաղն էլ աչքաչափի և նշանառության հետ է կապված: Պետք է գնդակն այնպես նետել, որ անցնի շրջանակի միջով: Ձեզանից ով հինգ գնդակից երեքը անցկացնի, նա էլ կշահի խաղը: Ով լավ խաղաց՝ նվեր կստանա:

Համիկը երեխաներին ցույց տվեց «Պատմվածք որդու մասին» գիրքը: Խաղն սկսվեց:

Վ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

---

# ԻՆՉՊԵՍ ԾԱՌ ՏՆԿԵԼ

(Նկարները տես շապիկի 4-րդ էջում)

*Սոցիալիստական քաղաք կամ որևէ այլ բնակավայր չի կարելի պատկերացնել առանց կանաչ տարածությունների: Իսկ դրա համար հարկավոր է ունենալ ծառերի ու թփերի լավորակ տնկիներ և իմանալ, թե ինչպես տնկել:*

*Տնկելու համար ծառերը և թփերը տնկարանից հանում են գարնանը, կամ աշնանը: Ծառերը գարնանը տնկելու դեպքում, փոսերը փորում են նախորդ աշնանը, իսկ աշնանը տնկելու դեպքում՝ ամռանը: Այդպես են անում, որ հողը լավ փխրվի: Փոսերը պատրաստում են այնպես, որ տնկիների արմատները ազատ տեղավորվեն և նորածիլ արմատները աճեն փխրուն հողի մեջ: Սովորաբար փոսի խորությունը պետք է լինի 40—50 սանտիմետր, լայնությունը՝ 60—70 սանտիմետր:*

*Փորելիս վերին պարարտ հողը պետք է կիտել փոսի մի կողմը, իսկ ավելի խորը շերտի հողը՝ փոսի մյուս կողմը (նկ. 1): Փոսերի հատակի հողը պետք է լավ փխրեցնել և պարարտացնել: Նախքան ծառը տնկելը փոսի կենտրոնում ամրացնում են փայտե հենարան, որի բարձրությունը պետք է լինի ծառի առաջին ճյուղին հավասար: Տնկելուց անմիջապես առաջ, ծառի և արմատների վիրավորված մասերը պետք է կտրել, իսկ գլխավոր արմատը թողնել 30—35 սանտիմետր երկարությամբ:*

*Նախքան տնկելը, փոսի մեջ բլրակի ձևով պետք է լցնել վերին շերտի պարարտ հողը (նկ. 2):*

*Եթե վերին շերտի հողը որակով չի, կարելի է լցնել ոչ թարմ գոմաղբի հետ խառնած փափուկ հող, այդ բլրակի վրա դնել ծառը՝ ուղղելով արմատները:*

Ծառը երկու մարդ են տնկում։ Նրանցից մեկը բռնում է բունը, մյուսը, առանց խճճելու կամ կոտրացնելու, արմատները դասավորում է փռում, զգուշությամբ վրան հող լցնում (նկ. 3)։

Արմատները ծածկելիս հարկավոր է հետևել, որ հողը լավ նստի և արմատների մեջ դատարկ տարածություն չմնա։ Դրա համար հարկավոր է ծառը մի թեթև շարժել և ձեռքով դասավորել փխրուն հողը։

Ծառի տնկելու խորությունը հետագա աճման համար խոշոր նշանակություն ունի։ Ընդհանրապես ծառի տնկման խորությունը պետք է արմատավզիկին հավասար լինի (արմատավզիկը այն տեղն է, որտեղից արմատները բաժանվում են բնից)։ Բայց թեթև հողերում կամ աշնանը տնկելու դեպքում, կարելի է հողը արմատավզիկից բարձր լցնել, իսկ ծանր, խոնավ հողերում տնկելու ժամանակ ծառը դնել բլրակի վրա այնպես, որ արմատավզիկն իր շրջապատից մի փոքր բարձր լինի։

Ծառը տնկելուց հետո, կարելի է բռնել նրա բնից և ոտքով ամրացնել հողը։ Դա պետք է այնպես կատարել, որ արմատները չվիրավորվեն։ Դրանից հետո ծառի շուրջը հարկավոր է պատրաստել բաժակ և անմիջապես ջրել (նկ. 5)։ Եթե ջրելուց հետո հողը շատ նստի, նշանակում է փոսը լավ չի լցրած, ներսը դատարկ է։ Այդ դեպքում հարկավոր է նորից հող լցնել։ Եվ վերջապես ծառը խոտով կամ փափուկ թելով երկու տեղից 8 թվանշանի ձևով կապել հենարանից (նկ. 4)։

*Ա. ՍԲՈՐՇՉԻԿՅԱՆ*

(Անտառային տնտեսության գլխավոր վարչության ավագ ինժեներ)

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ



Շապիկի առաջին էջը՝ ֆոտո-կոմպոզիցիա Ս. ԽՈՍՐՈԵՎԻ, չորրորդ էջը՝ նկ. Մ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆԻ։



*Խմբագիր՝* ՏԱԼՅԱՆ Վ.

*Խմբագրական կոլեգիա՝* ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԽԱՉԱՏՐՅԱՆ Հ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер“ на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21

*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2-44-83, 2-59-06*

*ՎՖ 05500։ Պատվեր 40։ Տիրաժ 5000։ Տպագրական 2½ մամուլ։ Ստորագրված է տպագրության 20.I.1954 թ.*

*Հայպոլիգրաֆհրատի № 1 տպարան, Երևան, Ալավերդյանի փող. № 65։*



# ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ



## Լենինի բարեկամն ու զինակիցը

Նադեժդա Կոնստանտինովնա Կրուպսկայան վաղ հասակից կապվեց Պետերբուրգում գործող մարքսիստական խմբակների հետ: Այդ խմբակները բանվորների շրջանում ռևոլյուցիոն աշխատանք էին կատարում:

1893 թվականին Կրուպսկայան ծանոթացավ Վ. Ի. Լենինի հետ: Այդ ծանոթությունն ընդմիշտ որոշեց Կրուպսկայայի կյանքի ուղին: Երիտասարդ ուսուցչուհին դարձավ կայուն ռևոլյուցիոներ: Մանկավարժական աշխատանքից բացի նա բանվորների մեջ տարածում էր մարքսիստական գրականություն, թռուցիկներ:



1896 թվականին ցարական ոստիկանությունը ձերբակալեց Կրուպսկայային: Յոթ ամիս բանտում պահելուց հետո նրան աքսորեցին հեռավոր Սիբիրի Շուշենսկոյե գյուղը: Այդտեղ էր աքսորված նաև Լենինը: Այդ ժամանակվանից Լենինի և Կրուպսկայայի բարեկամությունը անխզելի դարձավ:

Հոկտեմբերյան ռևոլյուցիայից հետո Ն. Կ. Կրուպսկայան ակտիվ կերպով մասնակցում էր մեր Հայրենիքում սոցիալիզմ կառուցելու գործին:

Կրուպսկայան երեխաների սիրելի բարեկամն էր: Նա հաճախ էր լինում դպրոցներում ու մանկապարտեզներում, զրույցներ անցկացնում երեխաների հետ, օգնում էր պիոներական խմբակների աշխատանքներին:

Մեծ է Կրուպսկայայի դերը պիոներական կազմակերպության ստեղծման և ամրապնդման գործում:

Ն. Կ. Կրուպսկայան մեռավ 1939 թվականին 70 տարեկան հասակում:

## Ա. Ս. Գրիբոյեդով

Սայլը դանդաղ բարձրանում էր Բզովդալ լեռան ոլորապտույտ ճանապարհով: Նրան ուղեկցող մարդիկ տխուր էին, հոգնած ու փոշոտված:

— Որտեղի՞ց,— մոտենալով նրանց հարցրեց մի ձիավոր:

— Թեհրանից:

— Ի՞նչ եք տանում:

— Գրիբոյեդովին,— կարճ պատասխանեցին նրան:

— Գրիբոյեդովի՞ն, դիա՞կը,— հազիվ կարողացավ արտասանել նա:

Ձիավորը ռուս մեծ գրող Ա. Ս. Պուշկինն էր:

Կարճ, բայց բովանդակալից կյանք ունեցավ Գրիբոյեդովը: Նա արտակարգ ընդունակության տեր էր և շատ աշխատասեր: Տասնմեկ տարեկան հասակում նրան պանսիոնից տեղափոխեցին Մոսկվայի համալսարանը: Չորս տարվա ընթացքում նա ավարտեց երկու ֆակուլտետ և ընդունվեց երրորդ՝ բնագիտա-մաթեմատիկական ֆակուլտետը:



Գրիբոյեդովը կարդում էր աշխարհի լավագույն գրողների գրքերը: Գրում էր նաև ինքնուրույն ստեղծագործություններ:

Գրիբոյեդովը տաղանդավոր դիվանագետ էր: 1828 թվականի սեպտեմբերին նա վերջին անգամ հրաժեշտ տվեց Ռուսաստանին և մեկնեց Իրան: Ամենուրեք ռուսական դեսպանին ծաղկեփնջով էին դիմավորում: Սակայն Անգլիայի կառավարության դրդմամբ Իրանի շահը թշնամանքով վերաբերվեց Գրիբոյեդովին:

1829 թվականի փետրվարի 11-ին շահի զինված ամբոխը շրջապատեց դեսպանատունը: Երեսունյոթ հոգի դիմադրում էին մեկ հազարանոց բանակին: Բայց կարճ տևեց նրանց դիմադրությունը: Անհավասար մարտում դեսպանատան աշխատողներից պատահմամբ ազատվեց միայն մեկը: Գրիբոյեդովը նույնպես սպանվեց: Մինչև վերջին շունչը նա հերոսաբար կռվում էր և անձնական օրինակով ոգևորում ընկերներին:

Գրիբոյեդովի ամենալավ գործը «Խելքից պատուհաս» կոմեդիան է: Դա սովետական ընթերցողների սիրելի երկերից մեկն է:

«Խելքից պատուհաս» կոմեդիան առաջին անգամ բեմադրվել է 1828 թվականին Երևանում, հեղինակի մասնակցությամբ:

## Առաջավոր գիտության կենտրոնը

230 տարի առաջ Պետերբուրգում (այժմ Լենինգրադ) հիմնադրվեց Ռուսական Գիտությունների ակադեմիան: Կարճ ժամանակում նրա հռչակը տարածվեց երկրի սահմաններից դուրս: Գիտություն ձեռք բերելու համար արտասահմանից Ռուսաստան էին գալիս երիտասարդների բազմաթիվ խմբեր: Գիտությունների ակադեմիայի ստեղծումը մեծ դեր խաղաց ռուսական գիտության զարգացման գործում: Նա մարդկությանը տվեց Լոմոնոսով ու Մենդելեև, Տիմիրյազև ու Սեչենով և այլ աշխարհահռչակ գիտնականներ:

Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիայից հետո Ակադեմիան գիտական ավելի լայն աշխատանքներ ծավալեց:

Նա այժմ կոչվում է ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիա և գտնվում է Մոսկվայում: Նրա ղեկավարությամբ միութենական ռեսպուբլիկաների գիտությունների ակադեմիաներն ու հարյուրավոր գիտահետազոտական ինստիտուտներ լուծում են համաշխարհային նշանակություն ունեցող հարցեր:

ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիան աշխարհի ամենաառաջավոր գիտության կենտրոնն է: